# ԽԻԶԱԽ ՊԱՏԱՆԻՆԵՐԸ



Միքայել Նալբանդյանի հուշարձանը Մյասնիկյանում

ՎԼԱԴԻՄԻՐ ՄՈԼՈԺԱՎԵՆԿՈ

Արարատյան դաշտավայրից հեռու-հեռո՛ւ, Դոնը թափվող Տեմերնիկ գետակի գահավեժ ափին բարձրանում են հայկական հինավուրց վանքի ավերակները։ Ժամանակից դեղնած տարեգրությունները հասցրել են մեզ ոչ միայն տաճարի անունը՝ Սուրբ-խաչ, այլև բազմաթիվ ավանդություններ, որոնք անցել են որդուց որդի։

Մոտ երեք հարյուր տարի առաջ այս վայրերում ապաստան գտան Ղրիմի խանի դաժան հետապնդումներից փախած հարյուրավոր ու հազարավոր հայ ընտանիքներ։ Ռուս եղբայրները օգնության ու բարեկամության ձեռք մեկնեցին նրանց։ Եվ մերձդոնյան տափաստանում աճեց մի ամբողջ քաղաք՝ Նախիջևանը, շրջապատված հայկական բնակավայրերով։ Աշխատասեր գաղթականները ամայի վայրը դարձրին ծաղկուն երկրամաս։ Կազակների հետ ապրեցին համերաշխ, հաճախ էլ ազգական դարձան, բայց պահպանեցին իրենց մայրենի լեզուն ու նախնիների սովորույթները։ Դեռ հիմա էլ այստեղ լսվում է հայկական խոսքը, հնչում են հայերի կախարդիչ երգերը...

Մի ժամանակ Սուրբ-խաչը լի է եղել աղմուկով ու կենդանությամբ։ Վանքի դպրոցում են սովորել Միքայել Նալբանդյանն ու Ռաֆայել Պատկանյանը։ Այստե՛ղ են ծնվել Նալբանդյանի առաջին մարտաշունչ տողերը, որոնք պայքարի կոչեր էին ցարական ինքնակալության դեմ։ Այստեղի՛ց Նալբանդյանը գնաց աքսոր, և այստե՛ղ բերվեց նրա աճյունը։ Իսկ ռևոլյուցիոն մարտերի տարիներին այստեղի ընդհատակյա գաղտնի տպարանում եղել են ազատության բոցաշունչ մարտիկներ Սուրեն Սպանդարյանն ու Ալեքսանդր Մյասնիկյանը։

Եվ երբ իրականացավ այն, ինչի համար իրենց կյանքը զոհեցին ժողովրդի լավագույն զավակները, երբ աշխատավոր մարդիկ դարձան իրենց բախտի տերը, Սուրբ—խաչ ավանը կոչվեց Մյասնիկավան։

Տարիների ընթացքում փուլ են եկել հնագույն տաճարի պատերը, ծածկվել տատասկով։ Ուրիշ ժամանակներ է ապրում երկիրը. ժողովուրդը ձգտում է գիտության, լույսի։ Հին վանքը մոռացության է մատնվել, և միայն Նալբանդյանի գերեզմանը

ՓԵՏՐՎԱՐ
№ 2 1961 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

տանող արահետն է, որ միշտ բաց է. գալիս են, գալի՜ս են մարդիկ, որպեսզի դաշտային ծաղիկներ դնեն մարտիկ գրողի հուշարձանին:

Սակայն վանքի ավերակներին կրկին անգամ վիճակվեց մտնել պատմության մեջ։ Դա տեղի ունեցավ Հայրենական Մեծ պատերազմի ահեղ տարիներին։

## ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ԵՐԴՈՒՄ

... Խոր գիշերին Ադամյանների դուռը թակեց պատառոտված շորերով, ուժասպառ մի մարդ։ Գևորգը դժվարությամբ ճանաչեց իրենց դպրոցի դիրեկտոր Ալեքսեյ Ավետիսյանի ձայնը:

Դա 1942 թվականի օգոստոսին էր։ Արդեն մեկ ամիս էր, ինչ ֆաշիստները տիրություն էին անում Ռոստովում։ Որտե՞ղից կարող էր գալ այդ մարդը։ Փախե՞լ էր ռազմաճակատից, դավաճան չէ՞ արդյոք նա։ Գուցե և նրան ուղարկել են գերմանացինե՞րը։

Մինչ գիշերային հյուրը հագցնում էր քաղցը, տանջալի մտքերը պաշարել էին պատանուն։ Ինչպե՜ս է փոխվել դիրեկտորը, հյուծվել... Չէ՞ որ Գևորգը դեռ հիշում է, թե ինչպես ամբողջ դպրոցով նրան ճանապարհ դրեցին դեպի ռազմաճակատ։ Դիրեկտորը խրատում էր ամուր պահել թիկունքը. «Ամբողջ հույսը ձեզ վրա է, տղաներ, միայն թե չերերաք, միշտ հաստատ եղեք»։ Բայց դուրս է գալիս, որ հենց ինքն է երերացել...

Ավետիսյանը գուշակում էր, թե ինչի մասին է մտածում ժորան և գդալը մի կողմ դնելով ասաց.

— Գիտեմ, իմ մասին վատ բան ես մտածում։ Բայց այդպես մի կարծիր, մենք դեռ կկռվենք...

Նա փոքր ինչ բարձրացավ տեղից, ուզեց հենվել տղայի ուսին, բայց հանկարծ անզգուշորեն ծալեց ոտքը և ընկավ հատակին, արնոտելով փոքրիկ գորգը։

Ո՛չ, Ավետիսյանը որպես դասալիք չի վերադարձել հարազատ վայրերը։ Մինչև վերջին փամփուշտը նա մարտնչել է Դոնի ափին, իսկ հետո երեք օր կոնտուզիահար ընկած է մնացել խուլ ձորակում։ Հազիվ ուշքի գալով, նա գիշերները սկսել է մոտենալ Մյասնիկավանին՝ հույս ունենալով հանդիպել պարտիզաններին։

— Մենք դեռ կկռվենք,— կրկնեց Ավետիսյանը, ծանրորեն ընկնելով նստարանին։

Եվ տղան հասկացավ. ուսուցչին պետք է հավատալ:

Ավետիսյանը մեկ շաբաթ ապրեց Ադամյանների ձեղնահարկում։ Այդ մասին գիտեր ոչ միայն Գևորգը, այլև նրա մտերիմ ընկերները՝ Արտեմ Մխիթարյանը և Կիմ Պողովը։ Տղաները շատ բաների մասին խոսեցին իրենց ուսուցչի հետ։ Նրանց ձեռքերը քոր էին գալիս. ուզում էին վերցնել ավտոմատն ու ոչնչացնել գերմանացիներին։

Այսպես ծնվեց ընդհատակյա մարտական խումբը Մյասնիկավանում։

1942 թվականի օգոստոսի 17-ին Վասյա Գլուշեցի բնակարանում, խիստ լռության մեջ, հնչեցին պարտիզանական երդման խոսքերը.

— Ես, լենինյան կոմերիտմիության անդամ Գևորգ Ադամյանս, երդվում եմ չխնայել կյանքըս գերմանական զավթիչների դեմ պայքարելու և հայրենի հողը ազատագրելու համար։ Արյան դեմ՝ արյուն, մահվան դեմ մահ։



Նույն երդումն ընդունեցին նաև Վասյա Գլուշեցը, նրա քույ-

րը՝ Տոնյան, Արտեմ Մխիթարյանը, Կիմ Պոպովը, Ժենյա Բոգոմոլկինը։

Խմբի անունը հեշտությամբ որոշեցին՝ «Բարեկամություն»․ չէ՞ որ նրա մեջ կային և՛ հայեր, և՛ ռուսներ, պայքարի ընկերներ ու բարեկամներ։

Երբ բոլորը միասին կրկնեցին երդման խոսքերը, Գևորգը արտասանեց իր սիրելի գրող Ավետիք Իսահակյանի «Է՛յ, ջա՛ն հայրենիք» բանաստեղծությունը։ Վերջացնելուց հետո կրկնեց երկրորդ տունը.

*Քու հողին մեռնեմ, անգի՛ն*
*հայրենիք,*
*Ա՜խ, քիչ է, թե որ մի կյանքով*
*մեռնեմ,*
*Երնեկ ունենամ հազար ու մի*
*կյանք,*
*Հազա՛րն էլ սրտանց քեզ*
*մատաղ անեմ:*

Հետո թարգմանեց, որ ռուս ընկերները հասկանան։

Երդվեցին մեկ-մեկ, զգույշ ու թաքուն, ամենուրեք խաչմերուկներում հսկում էին գերմանական պարեկները։

## ԿԱՐԵՎՈՐ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Պատանիները սկսեցին փոքրից։

Գիշերը նրանք սողեսող հասան տափաստան, որտեղ դեռ վերջերս որոտում էին մարտերը, և զենքեր հավաքեցին։ Այդ ամենը նրանք քարշ տվեցին դեպի վանքի ավերակները։ Ստորգետնյա փոքրիկ խցերը դարձան իսկական զինապահեստ։ Առավոտյան կողմ նրանք ավարտեցին գործը, հավաքած հրացանները խնամքով ծածկեցին հին պարկերով ու ծղնոտով և վրան հող լցրին։ Գերմանացիները ավերակներում գրեթե չէին լինում, իսկ եթե պատահեր, որ գնային, ապա դժվար գլխի ընկնեին, թե ինչպիսի գաղտնիք են պահում այդ հնամենի քարերը։

Խմբակի հերթական նիստում Վասյա Գլուշեցին ընտրեցին հրամանատար։ Դպրոցում նա հռչակված էր որպես լավ ֆիզկուլտուրնիկ և վորոշիլովյան հրաձիգ։ Շտաբի պետ ընտրվեց Գևորգ Ադամյանը։

Այդ ժամանակամիջոցում արդեն Ալեքսեյ Ավետիսյանը ապաքինվել էր վերքերից։ Ավանում մնալը նրա համար վտանգավոր էր․ ոստիկանները կարող էին տեսնել։ Եվ նա որոշեց անցնել Տեմերնիկը, գնալ Ռոստով։ Նախքան գնալը, Գևորգի հետ տեսակցություն նշանակեց իր հոր տանը, որ գտնվում էր Ռոստովի Ստեպնայա փողոցում[1]։ Ուսուցիչը տղաներին խստորեն պատվիրեց ոչինչ չձեռնարկել առանց իր գիտության, սպասել։

[1] *Այժմ՝ Նալբանդյան փողոց:*

Բայց մի՞թե նրանք կարող էին նստել առանց գործի, երբ գրեթե ամեն օր հիտլերականները մեկը մյուսի հետևից նորանոր չարագործություններ էին կատարում ավանում։ Մարդասպանները գնդակահարելու տարան հին բոլշևիկ՝ Հայկ պապին, տնից հանեցին հրեա հաշվետարի ամբողջ ընտանիքը և տարան ով գիտե, թե ուր՝ չխնայելով նույնիսկ հիվանդ ու ծեր մորը։ «Գերմանական մեծ բանակի» օգտին հարկ դրեցին բոլոր տների վրա։ Մյասնիկյանում չկար մի ընտանիք, ուր մտած չլիներ վիշտը։

Այնուամենայնիվ ուսուցիչը իրավացի էր․ պետք էր սպասել։ Դրանում է հենց ընդհատակի կարգապահությունը։

․․․ Ստեպնայա փողոցի տանը տեղի ունեցած հանդիպումը հիասթափեցրեց Գևորգին։ Թռուցիկներ տարածել. բայց դա՛ չէ, որ երազում էին տղաները։

Պարզվեց, որ այդ հանձնարարությունը այնքան էլ հեշտ գործ չէ։ Շատ վտանգներ էին սպասվում նրանց, ովքեր բնակչությանն էին հասցնում ճշմարտությունը՝ ռազմաճակատում տիրող դրության մասին։

․․․ Ռոստսելմաշ գործարանի մուտքին են մոտենում մի պատանի ու մի աղջիկ՝ Գևորգն ու Տոնյան։ Յուրաքանչյուրի մոտ մեծ քանակությամբ թռուցիկ կա, որ թաքցրել են շորերի տակ։ Բայց հանկարծ դեմ առ դեմ





հանդիպում են գերմանացի զինվորին։ Սա զբաղված է հայելապատ հանդերձապահարանով, որը ուրիշի ձեռքից խլելուց հետո ոչ մի կերպ չի կարողանում բարձրացնել սայլակի վրա։

— Հե՜յ, ռուս, քո՛մ, քո՛մ[1]...

Փախչել՝ նշանակում է մատնել իրենց։ Գևորգն ու Տոնյան սիրով օգնության են վազում ավազակին։ Բայց երբ սայլակը գլորվեց ասֆալտի վրայով, անցորդները գերմանացու մեջքին տեսան... թռուցիկ։

Պատանիները կանգ չառան։ Էլեկտրասյուններին, դարբասներին ու քանդված շենքերի պատերին, ամենուրեք, որտեղով անցնում էին նրանք, թողնում էին ռուսերեն և հայերեն գրված թռուցիկները։ Եվ նա, ով կարդում էր դրանք, չէր կորցնում հավատը, ուժ էր հավաքում դիմադրության ու պայքարի համար։



Հայկական Սուրբ—Խաչ վանքը, ուր հավաքվում էին պատանի պարտիզանները

## ԽԻԶԱԽՆԵՐԸ ԳՈՐԾՈՒՄ ԵՆ

Ավանի ծայրամասում, խիտ անտառակի մեջ բարձրանում էին «Երիցուկ» սանատորիայի կորպուսները։ Հանգստանալու համար այստեղ եկած մարդիկ իրենց արձակուրդն անցկացնում էին ստվերաշատ մրգատու այգում, փարթամ մարգագետիններում, վարդաստաններում։

Եկան զավթիչները, և «Երիցուկը» բոլորովին փոխվեց։ Գերմանացիները կտրեցին սանատորիայի զբոսայգու ծառերը։ Տանկերի թրթուրների տակ անխնա տրորեցին վարդենու թփերը։ Դարավոր կաղնիներով ու սլացիկ կաղամախիներով տաքացրին իրենց շարժական խոհանոցները։ «Երիցուկի» տերիտորիան զբաղեցրեց տանկային զորամասը։

Ամեն առավոտ ոստիկանները բակից բակ էին անցնում և Մյասնիկյավանի բնակիչներին քշում աշխատանքի, որ փշալարով շրջապատեն նախկին սանատորիան։ Ստիպում էին ամեն տեսակի գործ կատարել. բեռնել վառելանյութի տակառները, լվանալ մեքենաները, փորել ապաստարաններ։ Նման աշխատանքներ կատարելու համար չէին կերակրում, իսկ ում տանջում էր ծարավը, պահակները նրան ուղարկում էին դեպի յուղաբծերով ծածկված, կեղտոտ ջրի տակառը։

Բնակիչների հետ փշալարերի ներսում աշխատանքի գնացին «Բարեկամություն» ընդհատակյա խմբի անդամներ Կիմ Պոպովը, Գրիշա Զորովը, Գրիշա Պալադին։ Իսկ երեկոյան տեղի ունեցավ սարսափելի աղետ. շարքից դուրս եկավ հինգ տանկ։ Վառելանյութի մեջ հայտնաբերվեց հատուկ փոշի։ Գերմանացիները այդպես էլ չիմացան, որ դա արել էին այդ երեք խիզախ կտրիճները։ Բայց ավելի խստացրին պահպանությունն ու գաղտնությունները։

Գրեթե միաժամանակ տեղի ունեցավ մի ուրիշ դեպք։ Տղաները շարքից դուրս բերեցին բոլոր տրակտորները, որոնք ոստիկանության հսկողության տակ մեծ դժվարությամբ վերանորոգեցին ավանի մեխանիկները։

Այժմ արդեն պատանիները հիասթափված չէին։ Ուսուցչի տված հանձնարարությունը բոլորի էլ սրտով դուրս եկավ։ Այդ օրերին տեղի ունեցավ ևս մի դեպք, որը հուզեց ավանի բոլոր բնակիչներին։

Մյասնիկյավանում կա մի նվիրական բան. դա Միքայել Նալբանդյանի գերեզմանի վրայի հուշարձանն է։ Բռունցքները սեղմած՝ տղաները տեսնում էին, թե ինչպես են ֆաշիստները ավտոմատներից կրակում հուշարձանի վրա։ Գնդակները դիպչում էին բրոնզին և առանց վնաս պատճառելու, սուլելով այս ու այն կողմ թռչում։ Իսկ մի հարբած էսէսական կացինը ձեռքին մոտենում է հուշարձանին և թափով հարվածում գրանիտե պատվանդանին։ Քարը մնում է անսասան. կացնի բերանը միայն մի թեթև քերծվածք է առաջացնում։

Կույր կատաղությունից գերմանացին նետվում է հարբած ընկերների հետևից։ Նրանք քարշ տալով բերում են պարաններ, պողպատե ճոպանի կտորներ, վար գցում հուշարձանը և քաշում դեպի Տեմերնիկ գետակը։

Եվ այստեղ տղաներն էլ չեն համբերում։

— Ախր ֆրիցներն հարբած են։ Ի՞նչ ես ասում, Ժորա, հարձակվե՞նք, ասաց Ժենյա Բոգոմոլկինը։

— Իհա՛րկե։

Բոգոմոլկինը գնաց դեպի այն տունը, ուր կենում էին գերմա-

[1] Հե՜յ, ռուս, արի՛, արի՛...

նացիները։ Այնտեղից հասնում էր հարբածների երգը, լսվում էր նաև շրթհարմոնի վզվզոցը։

— Ձեզ համար ես ուզում եմ ռուսական երգ երգել,— ասաց Ժենյան գերմանացիներին։

— Օ՛, ռուս տղա, գութ, գութ[1].— աղաղակեցին այս ու այն կողմից։ — Երգիր։ — Եվ մեկը նրան մեկնեց բաժակով լի խմիչքը։

Զզվելի հեղուկը այրեց կոկորդը, բայց Ժենյան նույնիսկ ծըպտաց։

— Երգիր, տղա, երգիր։ Դե՛...

Եվ Ժենյան երգեց։ Նա աշխատում էր երգել որքան կարելի էր բարձր, որպեսզի գրավեր այն գերմանացիների ուշադրությունը, որոնք գետափին զբաղված էին հուշարձանով։ Նրան լսողները ռուսերեն երգից ոչ մի բառ չէին հասկանում, ծանոթ չէր նաև մեղեդին, բայց նրանք լռեցին, ներարկվելով պատանեկան հնչեղ ձայնի ուժին։

Այդ միջոցին Գևորգ Ադամյանը և նրա ծեր հայրը ուժից դուրս գալով ու մինչև ոսկորները թրջվելով աշնանային սառը ջըրում, ափ հանեցին Նալբանդյանի հուշարձանը։ Միայն թե հասցընեին, միայն թե Ժենյան մի քիչ էլ երգեր... Ահա և ավերակները։ Երեխաները, որ անհամբերությամբ սպասում էին նրանց, դուրս թռան խցերից, ընդառաջ վազեցին ու բռնեցին պարանից։ Առավոտյան խորհրդակցեցին և որոշեցին թաքցնել արձանը։ Գիշերը նորից հավաքվեցին ավերակների մեջ և մեծ զգուշությամբ արձանը ծորակով տեղափոխեցին Ադամյանների այգին։

Այսպես փրկվեց տաղանդավոր ժողովրդի մեծ զավակի հուշարձանը, հուշարձան, որը թանկագին է սովետական մարդկանց և ամենից առաջ յուրաքանչյուր հայ մարդու համար։ Եվ եթե ձեզ երբևէ վիճակվի լինել Մյասնիկյանում, դուք կտեսնեք Նալբանդյանի հուշարձանը և, անշուշտ, կմտաբերեք նրանց, ովքեր իրենց կյանքը վտանգելով, փրկեցին այն ու պահպանեցին հետագա սերունդների համար։

## — ԿՐԱ՛Կ...

Եկավ 1943 թվականի փետըրվարը։ Սովետական բանակը



*Ալեքսեյ Ավետիսյան*

Ստալինգրադի տակ ջախջախելով թշնամուն, անցավ վճռական գրոհի։ Ռազմաճակատը ավելի ու ավելի էր մոտենում Ռոստովին։ Մյասնիկյանում արդեն պարզորոշ լսվում էր թնդանոթաձգությունը։ Գերմանական զինվորները՝ հոգնած ու թևաթափ, ավանի ճանապարհով նահանջում էին դեպի Արևմուտք։

... Ինչ-որ մեկը մատնել էր Տոնյա Գլուշեցին։ Գիշերը ձերբակալեցին աղջկան։ Նրան նետեցին խոնավ ու մութ բանտախուցը, ծեծեցին պայտած սապոգներով, ռետինե մտրակով։ Գեստապոյականները նրանից ուզում էին իմանալ ընկերների անունները։ Տոնյան լռում էր։ Մի ամբողջ շաբաթ տանջեցին աննկուն կոմերիտուհուն, բայց ոչինչ չիմացան։ Գիշերվա սառնամանիքին նրանք կիսամեռ աղջկան նետեցին ճանապարհի վրա, համոզված լինելով, որ պարտիզանուհին հազիվ մի երկու ժամ ապրի։ Բնակիչները պատահականորեն գտան աղջկան և փրկեցին։ Իմանալով Տոնյայի՝ ձերբակալության մասին, «Բարեկամության» շտաբը հրաման տվեց՝ ավելի խոր անցնել ընդհատակ, չգիշերել տանը, սպասել ազդանշանի։ «Ձերբակալման դեպքում՝ ամեն ինչ ժխտել...»

Իսկ ազդանշանի երկար չսպասեցին...

Կաթնամթերքային ֆերմայի մոտի ձորակը ֆաշիստների համար ծառայում էր որպես դատաստանավայր. այստեղ էին սպանում սովետական մարդկանց։ Վաղ առավոտյան երկու գերմանացի այնտեղ տարան սովետական մի սպայի, բոբիկ ու մերկ։ Նրանց հետևից, քողարկվելով անտառակում, մոտենում էին վրիժառուները։ Երբ ավանը ծածկվեց բլրակի հետևը, Ժենյա Բոգոմոլկինը հրամայեց կրակ բաց անել։

— Եթե կփախչեն՝ չկրակել։ Գլխավորը մեր մարդուն փըրկելն է...

Երկու ավտոմատ և մեկ ատըրճանակ ճայթեցին ժամանակին։ Ֆաշիստները լեղապատառ փախան։ Իսկ սպան սկզբում նույնիսկ չհասկացավ, թե ինչ կատարվեց։ Տղաները արձակեցին նրա ձեռքերը։ Նա հայտնեց իր անունը՝ Բորիս։ Կիմ Պոպովը ոտքերից դուրս քաշեց հորականն

[1] Լավ, լավ։

Սապոգները և տվեց սպային։ Սա արագորեն հագավ, թեթևակի համբուրեց տղայի թուշը և հրաժեշտ տալով ասաց.

— Խփեք այդ զզվելիներին,— ասաց ու թաքնվեց անտառակում։

Երեք օր հետո ավան հասավ մի ուրախ լուր. Սովետական մի գումարտակ, Ղուկաս Մադոյանի հրամանատարությամբ, պատռելով թշնամու պաշտպանությունը, գրավել է Ռոստովի կայարանը։ Մարտը չէր դադարում։ Ֆաշիստներին հաջողվել շրջապատել գումարտակը, բայց մերոնք շարունակում էին մարտնչել։

— Արդյո՞ք նախիջևանցի չէ այդ հրամանատարը,— հարցնում էին ծերունիները։

— Որտեղից էլ որ լինի՝ մերոնցից է,— լինում էր պատասխանը։



Ժենյա Բոգոմոլկին

Եվ հավաքվեց «Բարեկամության» շտաբը։ Բայց այս անգամ ոչ թե վանքի ավերակներում, այլ Վոլոդյա Սագիրովի ննջարանում։ Եկավ նաև Ալեքսեյ Ավետիսյանը։

Նիստը երկար չտևեց։ Պետք էր օգնել Մադոյանի գումարտակին։ Ավանում դեռ կանգնած էր գերմանական գումակը։ Մի՞թե բաց կթողնենք։

Որոշեցին բաժանվել երեք խմբի։ Վասյա Գլուշեցը, Գևորգ Ադամյանը և Ժենյա Բոգոմոլկինը կպահվեն անտառակի մոտի թաքստոցում։ Անտառակում գումակին կհանդիպեն Կիմ Պոպովը, Գրիշա Զորովը և Գրիշա Պալադին։ Մի թաքստոց էլ պետք է լինի մյուս ճանապարհին, որ եթե այդտեղով անցնեն։ Արտեմ Մխիթարյանը, Վահրամ Տեր-Մինասյանը և Վոլոդյա Սագիրովը նախօրոք այնտեղ լինեն։

Գերմանացիները շտապում էին, հուսահատորեն մտրակելով ձիերին։ Հոգնած ձիերը դժվարությամբ էին քաշում ծանր բարձած սայլերը։ Նրանք հենց որ հասան անտառակին, տղաները կրակ բաց արին։ Թշնամու համար դա այնպես անսպասելի էր, որ նրանք առանց հապաղելու, գլխակորույս փախան։ Իսկ պարտիզանների կրակոցները լսվում էին և՛ ձախից, և՛ աջից, և՛ հետևից։

Այդ օրը երեկոյան սովետական զորամասերը գրավեցին Ռոստսելմաշ գործարանը։ Ահա, ուր որ է նրանք պետք է մտնեն Մյասնիկյան։ Տղաները գիտեին, որ շրջակայքում մերոնց է սպասում թշնամու գնդացիրը։ Սովետական զինվորներին ֆաշիստների թաքստոցը պետք է ցույց տար Կիմ Պոպովը։

Շտաբի այս հանձնարարությունը դժվար էր։ Պետք էր անցնել տափաստանի բաց տարածությունը, որի երկու կողմերից էլ գնդացիրներ էին սպասում։



Գևորգ Ադամյան

Բայց արժեր համարձակվել։ Կիմն անցավ, և մեր ականները լռեցրին թշնամու գնդացիրը։

...Ավանի բնակիչները ուրախության արցունքներով դիմավորեցին Մադոյանին ու նրա քաջերին։ Բայց սրանք շտապում էին նոր մարտեր մղելու։ Նրանց էին սպասում սովետական քաղաքացիները, որոնք դեռ տառապում էին թշնամու ձեռքի տակ։ Եվ Մադոյանի զինվորների հետ ռազմաճակատ մեկնեցին «Բարեկամություն» ընդհատակյա մարտական խմբի անդամները, Ալեքսեյ Ավետիսյանի գլխավորությամբ։

* * *

— Ահա և հայկական մի փոքրր բնակավայրի խիզախ վրիժառուների պատմությունը, որ տեղի է ունեցել Դոնի անծայրածիր տափաստաններում։ Նույնությամբ պահպանված են հերոսների իսկական անունները։

Դուք, իհարկե, կհարցնեք, թե ինչպե՞ս ընթացավ նրանց հետագա ճակատագիրը։ Նրանք

բոլորն էլ մինչև վերջ կատարեցին իրենց պարտքը։ Պայքարեցին թշնամու դեմ ինչպես հարկն է։ Ալեքսեյ Ավետիսյանին չվիճակվեց տեսնել Հաղթանակի տոնը։ Նա քաջի մահով ընկավ Օրյոլ—Կուրսկի աղեղում։ Դնեպրի վրա մղած մարտերում զոհվեց նաև Ժենյա Բոգոմոլկինը։

Գևորգ Ադամյանը պատերազմը վերջացրեց Պրուսիայում իբրև գվարդիայի լեյտենանտ։ Բոլորովին վերջերս նա վերադարձավ հայրենի ավանը և այժմ կոլտնտեսային ակումբի վարիչն է։ Մանկապարտեզի դաստիարակչուհի է աշխատում Տոնյա Գլուշեցը։ Մյուս տղաները նույնպես կան և աշխատում են հարազատ կոլտնտեսությունում։ Բոլորն էլ վաղուց արդեն հասուն մարդիկ են, ընտանիքի տեր։ Եվ, իհարկե, նրանք ամենից առաջ երազում են այն մասին, որ իրենց երեխաներն ապրեն ուրախ ու երջանիկ կյանքով և չտեսնեն պատերազմի արհավիրքներ.

*Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*



*Նկարները՝ Վ. ՍԱՎԱԴՅԱՆԻ և Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

*Լուսանկարները՝ Ա. ԿՈՆՈՊԼՅՈՎԻ*

# Հետքերը

*ՄՆԱՑԱԿԱՆ ԽԱՐՅԱՆ*

Արագածն ի վեր ամեն է ու ձյուն.
Ձյունախառն հողմն է սուլում մոլեգնում:

Աչքդ ուր կարկես՝ ճերմակ է, ճերմակ.
Վաղուց են լռել աղբյուր ու առվակ:

Ծաղիկ ու կանաչ խոր քուն են մտել.
Մայր հողն է նրանց ջերմորեն գրկել:

Անափ ձյունի մեջ երկար շարք կազմած
Ալպինիստները քայլում են առաջ:

Առաջատարի գործն է դժվարին.
Նա ինքն է բացում բոլորի ուղին.

Իսկ ընկերները՝ հանգիստ, ապահով,
Քայլում են նրա ոտնահետքերով:

Հեշտ է ուրիշի հետքերով գնալ.
Աշխատիր՝ ինքդ հետքեր ունենալ...

*Նկ. Կ. ՀԱՅԱՍՏԱՆՑՅԱՆԻ*

# Մի կաթիլ... ցեխաջուր

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Այն բոլոր խառնաշփոթությունները, որ պիտի պատմեմ, սկսվեց մի կաթիլ... ջրից։

Ա՜յ քեզ բան, կմտածեք դուք, մի կաթիլ մեղրի մասին լսել էինք, բայց մի կաթիլ ջրի մասին...

Ներողություն. ես ուզում էի ասել մի կաթիլ անձրևաջրից, ավելի ճիշտ՝ ցեխաջրից։

Դա մի ցավալի պատմություն է, որտեղ և ցեխաջրի կաթիլ կա, և՛ ֆուտբոլի գնդակ, և՛ մի Վարդանիկ, որ...

Բայց լավն այն է պատմել, թե չէ, համբերությունս հատնում է։

—

Վարդանիկը մեր հարևանի տղան է։ Չգիտեմ ինչպես է սովորում, բայց որ օրվա մեծ մասը փողոցում է, այն էլ ֆուտբոլի գնդակով, բոլորն էլ կհաստատեն։ Մեր փողոցը դեռ լրիվ կառուցված չէ. մի երկու տեղ նոր շենքեր են բարձրանում, շինարարությունից մնացած հին ու նոր բլրակներ կան, մի խոսքով, ասֆալտած էլ չէ։ Բայց եթե Վարդանիկին հարցնեք, կուզենա, որ մեր փողոցը միշտ էլ այդպես մնա։ Դե, պարզ բան է, ընդարձակ փողոց, ուր ոչ տրամվայ կա, ոչ տրոլեյբուս. փողոց չէ, այլ մի իսկական մարզադաշտ։ Ինչ անենք, որ խորդ ու բորդ է, որ ոչ «դարպաս» կա, ոչ «դարպասապահ»։ Վարդանիկի համար ամեն մի տան մուտքն ու դուռ «դարպաս» է, էլ չեմ ասում լուսամուտները։

—

Ինչպես ես հետո իմացա, այն բոլոր խառնաշփոթությունները, որոնց մասին պիտի պատմեմ, սկսվեցին մի քանի օր առաջ, երբ ամբողջ գիշերը անձրև եկավ։

Անձրև, ի՜նչ անձրև. ասֆալտյան մեր փողոցում բազմաթիվ լճակներ էին գոյացել։ Եվ ահա Վարդանիկս գնդակն առած «ուշացնում» է։ Գնդակով որ չի տալիս ջրափոսի մեջ, ցեխաջուրը ոտքից գլուխ թրջում է աշխատանքի շտապող մեր հարևաններից մեկին՝ ինժեներ Կարապետյանին։ Մարդը հակառակի պես այդ օրը հագած է լինում իր աշնանային նոր վերարկուն։ Կարապետյանը շատ է ցանկանում մի լավ քաշել այդ անպիտանի ականջները, բայց անձրևաջրի լճակները կտրում են նրա ճանապարհը։ Խեղճ մարդը մեկ նայում է ջրափոսի կենտրոնում լողացող անմերձենալի գնդակին, մերթ իր ձեռքում գտնվող ոլորված հատակագծին, թաշկինակով մի կերպ մաքրում է վերարկուի թաց փեշերն ու ծանոթ-անծանոթի հանդիպելուց խուսափելով, գլուխը կախ, հևիհև իրեն գցում շինգրասենյակ։ Ու երբ դողացող սրտով, անհամբերությամբ բաց է անում հատակագիծը, որ խնամքով գծագրել էր ամբողջ գիշերը, հուսահատությունից ձեռքը զարկում է ճակատին...

Այստեղ միայն, այո՛, այստեղ միայն այդ համբերատար ու բարի մարդը դուրս է գալիս իր համբերությունից։ Բայց և այնպես մեր հարգելի հարևանը մի քանի վայրկյան աչքերը փակած, չի ուզում հավատալ իր տեսածին։ Սակայն հո չէ՞ր կարող աչքերը միշտ փակած պահել։ Ու երբ նորից բացում է աչքերը...

Ցեխաջրի մի կաթիլ, ասես դիտմամբ, հոսելով եկել ու չորացել էր այնքան գեղեցիկ, այնքան խնամքով գծագրված շենքի ջրհորդանի վրայով մինչև... հիմքը։

Շատ բծախնդիր և իր աշխատակիցներից միշտ մաքրություն պահանջող հարևանիս համար ավելի ահավոր բան չէր կարող լինել, քան այդ չարաբաստիկ ցեխաջրի կաթիլը։ Ներսից դուռը փակելով, ռետինի և նույնիսկ ածելիի օգնությամբ նա շատ է աշխատում վերացնել գծագրի արատը։ Բայց իզուր...

Իսկ սպասարանում համբերությունից դուրս է գալիս շինգրասենյակի քարտուղարուհի Շուշիկը։ Նա պետք է հանձնարարություն ստանար ընկեր Կարապետյանից։

Եվ ահա, վերջապես դուռը բացվում է...

—Բարի լույս, ընկեր Կարապետյան,—ասում է Շուշիկը, շատ զարմացած, որ շինգրասենյակի պետը սովորականի պես չի ժպտում իրեն և ոչ միայն չի ժպտում, այլ և չի նայում։ Կարապետյանը արմունկները հենել է գրասեղանին փռված հատակագծի վրա, գլուխն առել ձեռքերի մեջ, և միայն կիտված հոնքերի տակից երևում է բիբի ծայրը։



Սակայն, Շուշիկը չի կորցնում իրեն. գե, գուցե ընկեր Կարապետյանը չի նկատել իր ներս մտնելը, մտածում է նա:

— Վա՜յ, արդեն հագե՞լ եք, շնորհավորում եմ, հիանալի վերարկու է և ի՜նչ հաճելի գույն ունի,— բացականչում է նա, որպես թե նոր է նկատում սենյակի անկյունում կախված վերարկուն:

Բայց ինչքան վերարկուից ձայն դուրս կգար, այնքան էլ Կարապետյանից:

— Ընկեր Կարապետյան... —շշնջում է այս անգամ Շուշիկը:

Բայց այդ շշունջը ընդհատվում է Կարապետյանի բարձրագոչ ձայնով:

— Ի՞նչ եք դուք էլ անընդհատ կրկնում. «ընկեր Կարապետյան», հա՛ «ընկեր Կարապետյան»: Լսեցի... և ժամանակ են գտել վերարկու շնորհավորելու... վեց տոնն գաջի ստացագիր մեքենագրեք:

Շուշիկն էլ քիչ հետո, հեզիկ ու անհամբեր, համարյա գնդակոծում է մեքենագրվող ստացագիրը, ամբողջ ջղայնությունը թափելով թղթի այդ կտորի վրա:

Թուղթը մի երկու տեղ նույնիսկ ծակծկվում է: Շուշիկը չի նկատում այդ և էլի մի ուրիշ բան էլ չի նկատում: Արցունքներից մշուշվել էին նրա աչքերը, և նա ուզում էր շուտ վերջացնել մեքենագրելը, պայուսակից հանել իր փոքրիկ, ասեղնագործ թաշկինակը, աչքերը սրբելու և... ով գիտե, գուցե և մի կուշտ լաց լինելու համար:

Անհամբերություն, անհամբերություն, ինչեր չեն պատահում դրանից:

Կարապետյանն էլ նույն անհամբերությամբ, մեքենայաբար ստորագրում է ստացագիրը:

Տեսնում եմ, դուք էլ եք անհամբեր, իմանալու համար, թե ի՞նչ է ստացվելու այդքան «անհամբեր» բառերի գումարումից:

Մի պարզ ու կլոր գումար՝ 60: Այո, Շուշիկը 6 տոննի փոխարեն մեքենագրել էր 60 տոնն...

Քիչ հետո, Այգեստանում կառուցվող շենքի վրա աշխատող մեքենավար Արտոն ստացագիրը գրպանում, սլանում է դեպի գաջի գործարան:

Նա էլ էր անհամբեր, որովհետև կառուցվող շենքում անհամբերությամբ գաջի էր սպասում ծեփողների բրիգադը...

Բայց արի տես, որ տասնհինգ րոպե էլ չանցած, երբ Շուշիկը դեռ սրբում էր իր անվերջանալի արցունքները, ամբողջ ուժով զնգում է հեռախոսը:

— Ո՞վ է, որտեղի՞ց,—լացակումած ձայնով հարցնում է Շուշիկը:

— Արտոն եմ, Արտոն. գաջի գործարանից,—աղմկում է խռպոտ լսափողը,—չեն տալիս...

— Ի՞նչը չեն տալիս,—արցունքները կուլ տալով հարցնում է Շուշիկը:

— Էն է՛լի... գաջը. ասում են այդքան չենք կարող բաց թողնել:

— Ինչո՞ւ.

— Չգիտեմ. ասում եմ չեն տալիս, ուրեմն չեն տալիս:

— Վա՜յ, այս ի՜նչ թարսություն է,—սրտնեղած ճչում է Շուշիկը և լսափողը նետում հեռախոսի «կոտոշների» վրա:

Եվ նա անհամբեր սպասում է Արտոյի գալուն, որ իմացվի, թե ի՞նչ է պատահել:

Այգեստանից էլ զանգահարում են ու զանգահարում.

— Գա՜ջ, գա՜ջ, գա՜ջ...

Ուղղակի կարելի է գժվել. տեսնես ինչով է վերջանալու այս բոլորը...

Ձեզ մեկ առ մեկ չեմ ուզում պատմել, թե ինչպես վերադարձավ Արտոն, թե ինչ աղմուկ-աղաղակ բարձրացավ շինգրասենյակում, երբ պարզվեց Շուշիկի մեքենագրական սխալը: Մինչև նոր ստացագիր մեքենագրվեց ու ստորագրվեց, մինչև գաջը Այգեստան հասավ, օրը դարձավ կես:

Օրը կես դարձավ, և իմ պատմությունն էլ համարյա վերջացավ: Բայց...



Նկ. Վ. ՍԱՎԱԴՅԱՆԻ



Ի՞նչ բայց. դուք երևի անհամբերությամբ սպասում էիք, որ այսքան խառնաշփոթությունից, արցունքներից, աղմուկ-աղաղակից հետո, վերջ ի վերջո, պիտի մեղավորը բռնվե՞ր։

Ցավոք սրտի, այդպես չպատահեց. ոչ մի խոսք չեղավ այդ չարաբաստիկ ցեխաջրի կաթիլի մասին և ոչ էլ Վարդանիկի։

Դե, որտեղի՞ց ճանաչեիք Վարդանիկին. այդ մասին ես գիտեմ և դուք։ Անգամ ինքը՝ Վարդանիկը չգիտեր, թե ինչեր պատճառեց շինգրասենյակին իր ֆուտբոլի գնդակով։

* * *

Այդ օրը հայրիկը Վարդանիկին խոստացել էր աշխատանքից վերադառնալուն պես՝ Ունիվերմագ գնալ՝ ֆուտբոլի կոշիկներ գնելու համար։

Բայց ահա օրը կես էր դարձել, հետո երեկոն իջել, ու Վարդանիկի հայրը չկար ու չկար։

Անհամբեր էր Վարդանիկը։ Շուտով կլիներ երեկոյան ժամը ութը, կփակվեր և Ունիվերմագը։

Իսկ այդ պահին...

Այո՛, այո՛, հենց այդ պահին մեր փողոցի ծայրում իրար հանդիպեցին երկու հին բարեկամներ։ Մեկը աշնանային նոր վերարկուով, իսկ մյուսը՝ շինարարի արտահագուստով։ Շինարարը վարպետ ծեփարար Սողոմոնն էր, իսկ մյուսին դուք երևի ճանաչեցիք նոր վերարկուից։ Այո՛, դա մեր շատ հարգելի հարևան Կարապետյանն էր, որ ձեռքերը տարածած դեպի անձրևալճակները, տխուր և հոգնած ձայնով պատմում էր իր հետ պատահած անախորժ դեպքի մասին, ավելացնելով, որ հարկավոր է օր առաջ բարեկարգել փողոցը, և որ գլխավորն է, դաստիարակել մեր փողոցի... «ֆուտբոլիստներին»...

Այստեղ ծեփարար վարպետը կծեց իր մատը։ Նա արդեն կռահել էր, թե ո՞ւմ մասին է խոսում։

«Եվ ո՛չ մի ֆուտբոլի կոշիկ, և ո՛չ մի ֆուտբոլի կոշիկ. ամբողջ մի շինգրասենյակ իրար խառնես, բրիգադս մինչև ուշ գիշեր աշխատեցնել տաս, ու դեռ կոշի՞կ,— կրկնում էր նա ինքն իրեն, երբ հոգնատանջ ինժեները իր տխուր ձայնով նկարագրում էր փոքրիկ «անծանոթին»...

Իսկ Վարդանիկը անհամբերությամբ սպասում էր իր հորը։ Է՜հ, Ունիվերմագն արդեն փակեցին...

Բայց նրա անհամբերությունը երկար չպիտի տևեր, և Վարդանիկը շուտով, շատ շուտով ամեն ինչ կիմանար, որովհետև ծեփարար վարպետ Սողոմոնը նրա հայրն էր։

Է՜, երևի կասեք դուք. ով գիտե, և վարպետ Սողոմոնը նրան ոչինչ էլ չի ասել և կոշիկներ էլ է գնել։

Ներողություն. կոշիկներ չի գնել. դե, ես նրանց հարևանն եմ և այդ մասին լավ գիտեմ։ Իսկ ինչ վերաբերում է այն բանին, որ Վարդանիկն իմանա, թե ինչ անախորժությունների պատճառ դարձավ ինքը, դժվար չէ։ Նա այդ կիմանա «Պիոների» հենց այս համարն ընթերցելիս։ Նա «Պիոներ» ստանում է, այդ ես արդեն հարցրել եմ փոստատարից։

# «ՑԻՐԿԻՍՏԸ»

ԳՈՀԱՐ ԹԻԼՈՅԱՆ

Արամը ռումբի պես նետվեց դասարան:

— Երեխե՛ք,—բացականչեց նա, -ես ցնցող մի նորություն գիտեմ:

Երեխաներն իսկույն շրջապատեցին նրան:

Արամը հինգերորդ դասարանի կենդանի հեռագիրն էր: Նա միշտ առաջինն էր իմանում դպրոցի բոլոր նորությունները:

— Շուտ արա և մեզ մի՛ տանջիր,—զինվորականի նման հրամայեց Օլյան:

— Հիմա մեր դասարանը կգա մի ցիրկիստի տղա, -վրա բերեց Արամը, հայացքը բոլորի վրա պտտեցնելով:

— Ցիրկիստի տղա՞,—չհասկացան երեխաները:

Դե ի՞նչ կա այստեղ չհասկանալու. մեր դասարանում պիտի սովորի մի տղա, որի հայրը ցիրկիստ է,—բացատրեց Աարմը:

Եվ դեռ երեխաները ուշքի չէին եկել, երբ զանգը հնչեց ու դասարան մտավ ուսուցչուհին, մի բարձրահասակ տղայի հետ:

—Սա Յուրա Չիկոլդանն է,—ասաց ընկեր Վարսիկը.—Նա պետք է մեր դասարանում սովորի, քանի դեռ նրա հայրը մեր քաղաքումն է գտնըվում:

Նա Յուրային նստեցրեց Պետրոսի կողքին, և դասն սկըսվեց: Վերջապես զանգը հնչեց, բայց ոչ ոք դասարանից դուրս չեկավ: Ամբողջ դասարանը շրջապատեց Յուրային:

— Ճի՞շտ է, որ քո հայրը ցիրկիստ է,- հարցրեց Արամը:

-- Իմ հայրը կրկեսի արտիստ է: Ցիրկիստներ ընդհանրապես չեն լինում, լինում են կրկեսի արտիստներ. բացատրեց Յուրան:

— Գուցե քո հայրը ծաղրածու՞ է,—հարցրեց կռվարար Գեղամը, որը աշխատում էր միշտ որևէ մեկին խայթել:

Բայց Յուրայի պատասխանը խիստ զարմացրեց երեխաներին:

— Ո՛չ. ցավոք սրտի, իմ հայրը ծաղրածու չէ:

— Իսկ ինչու՞ ցավոք սրտի. զարմացան երեխաները:

Նրա համար, որ ծաղրածուն կրկեսի ամենաառաջին, ամենաբարձր արտիստն է: Լավ ծաղրածուն միաժամանակ լավ ակրոբատ պետք է լինի և լավ ձեռնածու: Դուք երևի գիտեք Օլեգ Պոպովին. նրան հաճախ ցույց են տալիս կինոժուռնալներում:

— Տեսե՛լ ենք, տեսե՛լ ենք,—լսվեց ամեն կողմից,- Օլեգ Պոպովը մեր սիրելին է:

— Իսկ քո հայրը ի՞նչ արտիստ է,—հարցրեց Լարիսան:

— Մենք աշխատում ենք ձիերի վրա:

— Ա՛յ, սա հիանալի՜ է,—շրթունքները ճպպացրեց Գևորգը. ձիերին ես շատ եմ սիրում:





Դասերից հետո Յուրա Ջիկոլդանը դուրս եկավ՝ շրջապատված ամբողջ դասարանով: Երեխաներն իմացան, որ Յուրան իր արտիստ ծնողների հետ եղել է Սովետական Միության շատ քաղաքներում, իսկ մի անգամ նա եղել է նույնիսկ արտասահմանում:

Ամբողջ դասարանը սիրեց նոր ընկերոջը, բայց չգիտես ինչու «ցիրկիստ» մականունն այդպես էլ մնաց նրա վրա:

Երկու շաբաթ անց, ընկեր Վարսիկը հայտարարեց.

—Կիրակի օրը ամբողջ դպրոցով կգնանք կրկես:

Դասարանով մեկ տարածվեց ուրախ «ուռա՜»:

Կրկեսը լեցուն էր մեծերով և երեխաներով: Ուրախություն և կենդանություն էր տիրում ամենուր: Ամբողջ դասարանը հավաքված էր: Միայն Յուրա Ջիկոլդանը չէր երևում:

— Ո՞ւր է Ցիրկիստը, ինչու՞ չի եկել: Չէ՞ որ նա ապրում է կրկեսում, ի՞նչ է անում, որ չկա.—զարմանում էին երեխաները:

Այդ ժամանակ նվագախումբը նվագեց ուրախ մի քայլերգ, լուսարձակը բաց թողեց իր ճառագայթները, և գորգով ծածկված խաղասպարեզը փայլեց ուրախ լույսով: Ներս վազեց ծիծաղելի «շեկը» և սկսեց զվարճացնել հասարակությանը:

Մեկը մյուսի հետևից սկսեցին ելույթ ունենալ արտիստները: Կային օդային մարմնամարզիկներ, ձեռնածուներ, լարախաղացներ և վարժեցրած շներ: Եվ ահա, երբ վերջացավ վարժեցրած շների համարը, ու վերջին շնիկն անհետացավ վարագույրի հետևում, տնօրենը հայտարարեց.

— Կրկեսային արվեստի վաստակավոր արտիստներ՝ Ջիկոլդանները:

Հինգերորդ դասարանը շունչը պահեց: Իրար հետևից զարմանալի գեղանազությամբ խաղասպարեզ դուրս եկան չորս ձի: Նրանք բոլորը սպիտակ էին և մեկը մյուսից գեղեցիկ: Ձիերից անմիջապես հետո երևացին նաև արտիստները՝ Յուրայի հայրը, մայրը և մեծ քույրը: Ինչեր ասես չարեցին նրանք, ապշեցուցիչ թեթևությամբ ցատկելով մի ձիուց մյուսի վրա: Հետո երեքն էլ հայտնվում էին մեկ ձիու վրա և կատարում էին այնպիսի զարմանալի

համարներ, որ երեխաները ապշել էին նրանց ճարպկության և ուժի վրա:

Բայց ո՞ւր է այնուամենայնիվ մեր Ցիրկիստը,— ձեռքերը տարածեց Պավլիկը:

— Փոխանակ այսօր մեզ հետ լինելու, նա անհետ կորել է,— սրտնեղած ասաց Թամարան:

Ջիկոլդանների համարը վերջացավ: Նրանք երեքն էլ գլուխ տալով հասարակության ծափերին, դուրս եկան: Խաղասպարեզում մնաց միայն մեկ ձի: Եվ հանկարծ ապշած երեխաները տեսան, թե ինչպես վարագույրի հետևից հայտնվեց Յուրան: Նրա ոտքերին կարմիր, թեթև կոշիկներ կային, որի ճիտքերի մեջ էին խրված երկնագույն մետաքսե անդրավարտիքի ծայրերը, իսկ վերնաշապիկը շողշողում էր բոլոր գույներով և փայլփլում էր արևի պես:

Երեխաները կես րոպեի չափ ապշած նայում էին իրենց ընկերոջը:

— Ահա թե որտեղ է մեր Ցիրկիստը:

Հետո ամբողջ ուժով սկսեցին ծափահարել: Իսկ Յուրա Ջիկոլդանը զարմանալի թեթևությամբ, առանց ձեռքերի օգնության ցատկեց ձիու վրա, որը վազում էր խաղասպարեզի երկայնքով: Մի շրջանը նա կատարեց գեղեցիկ դիրքով նստած, մի ոտքը առջևը պարզած, երկու շրջան նա կատարեց կանգնած, իսկ հետո ամբողջ դասարանի հիացական բացականչությունների տակ, նա կրկնակի ու եռակի պտտաթռիչք կատարեց: Բայց դեռ վաղ էր զարմանալը...

Այն բանից հետո, երբ նա ձիու վրա գլխիվայր կանգնեց, նրան նետեցին փոքրիկ սանդուխք՝ յոթ մարզաձողով, որը նա բռնեց զարմանալի թեթևությամբ:

Ահա այստեղ էլ հենց Յուրան ցույց տվեց իր ամբողջ ճարպկությունն ու վարպետությունը:

Մի քանի բավականին դժվար վարժություններից հետո, նա բարձրացավ սանդուխքի ամենաբարձր մարզաձողի վրա և ձեռքերը տարածած՝ պտտվեց մի քանի անգամ: Ամբողջ կրկեսը հիացած ծափահարում էր պատանի վարպետին: Հետո Յուրան կռացավ, հանդիսատեսները կարծեցին, թե նա պատրաստվում է իջնել, բայց ի զարմանս նրանց, նա ոչ թե իջավ, այլ ձեռքերի վրա կանգնեց նույն մարզաձողի վրա և այդպես կատարեց մի քանի պտույտ:

Կրկեսը թնդում էր ծափահարություններից: Դա ամենալավ համարն էր հանդիսատեսների այսօրվա տեսած բոլոր համարներից: Եվ դա Յուրայի առաջին ինքնուրույն ելույթն էր:

Երկուշաբթի օրը դպրոցում բոլորը խոսում էին Յուրա Ջիկոլդանի մասին և անհամբերությամբ սպասում նրա գալուն:

— Գալի՜ս է,— տարածվեց դասարանով մեկ: Երբ Յուրան աստիճաններով բարձրացավ վեր, բոլորը ողջունեցին նրան:

Ոչ ոք Յուրայի հայացքում գոռոզություն չնկատեց: Նա համեստորեն դասարան մտավ, նստեց իր տեղը՝ Պետրոսի կողքին, միայն նրա աչքերը թեթևակի ժպտում էին, կարծես ասելով.

— Տեսնու՞մ եք, թե ինչեր կարող եմ անել ես...

Եվ երեխաները այլևս չէին ձանձրացնում նրան հարցերով: Նրանք գիտեին, որ իրենց հետ մի դասարանում սովորում է կրկեսի մեծ վարպետ:



*Նկ. ՍՏԵԼԼԱ ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆԻ*

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱԺԱՆՈՒ

Սոնան, Սուրիկն ու Սարիկը
Ամբողջ օրը շատ միտք արին.
Թե ի՞նչ անեն, որ մայրիկը
Տան գործերում քիչ չարչարվի։
Սոնան ասաց.
— Ես ամեն օր փոշեկուլը կբանեցնեմ
Ու մեկ էլ մեր մսաղացը։
Սուրիկն ասաց.
— Ես լվացքի մեքենայով շոր կքամեմ։
Կբանեցնեմ սրճաղացը։
Սուրիկն ասաց.
— Ես համեստ եմ, իմ ուզածը
Միշտ էլ քիչ է՝
Կբանեցնեմ միայն
Ռադիոընդունիչը...



ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

## ԱՅՍՊԵՍ ԱՆԵՆՔ

Պահարա՜նը, պահարա՜նը,
Ո՞նց կլինի դրա բանը։

Պահարանը բա՜րձր է, բա՜րձր է,
Իսկ Սոնիկը ցա՜ծր է, ցա՜ծր է։

Փոշին եկել ու նստել է,
Պահարանը կեղտոտել է։

Ո՞վ կսրբի պահարանը,
Ո՞նց կլինի դրա բանը։

Ինչքա՞ն պիտի նա սպասի
Մինչև Սոնան բոյ կքաշի։

Գնանք բերենք սանդուխքները,
Սոնան ելնի կանգնի վերը,

Սրբի փոշոտ պահարանը,
Թե չէ վատ է դրա բանը։



## Ե Ղ Բ Ա Յ Ր Ը

Ուշացել է մայրիկը.
Լաց է լինում Լալիկը.
— Բայ-բա՜յ, բայ-բա՜յ, քույրի՜կ ջան,—
Օրորում է Սոնիկը։

Ձայնին եկավ Սուրիկը.
Սոնիկը թե.— Ձեռք մի՛ տուր.
Սուրիկը թե.— Հերի՛ք է,
Իմ քուրիկն է, շուտ ի՛նձ տուր։

Սոնիկը թե.— Դու գնա՛,
Լալան քեզ մոտ չի մնա.
Դու տղա ես, իմացի՛ր.
Երեխան քո բանը չի։

Սուրիկը թե.— Սրա՞ն տես.
Եղբայրն ո՞վ է, դո՞ւ, թե՞ ես.
Թե Լալային նեղացնեն,
Պաշտպանն ո՞վ է, դո՞ւ, թե՞ ես...

## ՓՈՇԵԿՈՒԼԸ

Արդեն ունենք մենք հիմա
Մի փոշեկուլ մեքենա.
Տեսքը փայլուն ու նոր է,
Թմբուկի պես կլոր է,
Ու խողովակն էլ, մի տե՛ս.
Փղի կնճիթ է ասես։
Ամեն անկյուն, ամեն անցք
Հոշոտում է շարունակ։
Սենյակի մեջ ման գալիս,
Աղբը գտնում, կուլ տալիս,
Հետո կանգնում է տեղում,
Դռդռում է, գռգռում,
Թե՝ ես պարապ ի՞նչ անեմ,
Փոշի բերեք կլանեմ։



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ



# ԲԱ ՈՐ ԱՍՈՒՄ ԷԻ...

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Խնձորենու տունկը ընկել էր ցանկապատի տակ, դողում էր սառը քամուց ու մտածում. «Ես կչորանամ... ես կմեռնեմ, թե քիչ էլ այսպես մնամ... Եվ ինչու՞ են վիճում այս տղաները. միևնույն չէ՞, թե որտեղ կտնկեն ինձ... միայն թե շուտ տնկեն...»

Իսկ վեճը քանի գնում տաքանում էր, որովհետև, չգիտես ինչու, տղաներից յուրաքանչյուրը ծառն իրենն էր համարում և ցանկանում էր անպայման իրենց լուսամուտի տակ տնկել։

— Առաջինը ես եմ խնդրել, ասաց Վահանը, — քեռի Վարդանը տունկը ինձ է տվել. մեր լուսամուտի տակ էլ պետք է տնկենք...

— Ո՛չ, — մեջ ընկավ Վանին.— առաջինն ինձ ասաց. «Վաղը տունկը կուղարկեմ»։

Բայց այստեղ պատահեց անսպասելին. Շեկլիկ Մարտինը վերցրեց տունկն ու տարավ.

— Ես պարտիզպանի թոռ եմ, ծառի լեզուն հասկանում եմ. մենք էլ չորս լուսամուտ ունենք, ուզեմ-չուզեմ, կհետևեմ, ամբողջ օրը աչքիս առաջ կլինի։

— Ու՞ր, ու՞ր, տունկն ու՞ր ես տանում, — գոռաց Սեթն ու թափով հասցրեց Շեկոյի ծոծրակին.

— Ու՜ֆ, — ճչաց Շեկոն, կռացավ, որ քար վերցնի, տղաները մեջ ընկան, բաժանեցին։

Այդ ժամանակ բացվեց վերին հարկի լուսամուտներից մեկը, և Ջիկի մայրիկը ձայն տվեց.

— Այդ ինչ եք անում, մինչև դուք վիճեք, տունկն էլ պետք չի գա, կչորանա... Որպեսզի բոլորդ էլ խնամեք, տնկեցեք, ա՛յ, այստեղ, ցանկապատի տակ՝ բոլորիդ աչքի առաջ։

* * *

Երբ ծառն արդեն տնկված էր, երեխաները ջրեցին և վերցնելով պայուսակները գնացին դպրոց։

Ծառը մնաց մենակ. Նա բարալիկ արմատները տարածեց հողում, կուշտ-կուշտ ծծեց պաղ ջուրն ու զվարթացավ։

Այդ ժամանակ տանիքի տակից դուրս թռավ բակի ծանոթ ճնճղուկը, թառեց ցանկապատի այն ճյուղին, որից տղաները կապել էին տունկը, և ուրախ ճկճկաց.

— Բարի օր, փոքրիկ խնձորենի, բարի օր, դու շուտով կկանաչես,— և թռավ

հարևանուհու բակը, նոր լույր ճնճղուկներին հայտնելու...

* * *

Անցան օրեր...

Ծառը նոր արմատներ գցեց, ամրացավ... Երկարեցին ծառի ճյուղերը, նոր ճյուղեր դուրս եկան... Բայց արի տես, որ երեխաները սկսեցին ուշ-ուշ այցելել նրան և քիչ-քիչ բոլորովին մոռացան։

— Ես, մեկ է, օդաչու պետք է դառնամ, — ասաց Սեթը։

— Իսկ ես՝ նավաստի, — ասաց Շեկլիկ Մարտինը։

— Իսկ ես, կարծում եք, գյուղատնտե՞ս եմ դառնալու. ներողություն, ծառը թող աղջիկները խնամեն, — ասաց Արան, և բոլորը միասին հեռացան։

Աղջիկներն էլ իրենց հաշիվն ունեին... Մի քանի անգամ ջրելուց հետո, նրանք էլ չմոռացան ծառին.

Միայն փոքրիկ Նունեն և տանիքի տակ ապրող ճնճղուկը չմոռացան նրան և չհրաժարվեցին իրենց բարեկամից։

Նունեն ամեն օր ջրում էր ծառը, հավաքում քարն ու աղբը, փոքրիկ բահով փխրեցնում էր ծառի տակի հողը. իսկ ծանոթ ճնճղուկը թառում էր ցանկապատին, ուրախ երգում և սիրտ տալիս ծառին.

— Մի՛ վախենա, սիրուն տունկ, դու չես չորանա, կաճես, կծաղկես։

Գարունը եկավ...

Կանգնել էր ծառը ցանկապատի տակ և իր բաց վարդագույն ծաղիկները պարգել աշխարհին։ Մեղուները պտտվում էին նրա շուրջը, ծծում քաղցր հյութը և ծաղկեփոշին տներին՝ թռչում դեպի տուն։

Ծանոթ ճնճղուկը թռչկոտում էր ծառի շուրջը, քշում սպիտակ-աներես թիթեռներին, ճյուղից-ճյուղ ցատկոտելով որսում վնասատու միջատներին և ուրախ-ուրախ ճկճկում։

— Բա որ ասում է՜ի... բա որ ասում է՜ի..



Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ



# ԴԱՐԲԱՍԱՊԱՀԸ



ՍԵՐԺԻԿ ՂԱԶԱՆՋՅԱՆ

Հակոբը թվաբանության խնդիրն էր կարդում, երբ լսեց Մերուժանի սուլոցը: Նա սուլում էր ֆուտբոլի քայլերգը, որ նրանց համար ծառայում էր իբրև պայմանական նշան: Մերուժանը կանչում էր ֆուտբոլ խաղալու:

Ֆուտբո՞լ: Ո՛չ, Հակոբը այսօր բոլորովին տրամադրություն չունի: Ճիշտ է, հաճախ է «2» ստանում, բայց երբ ֆուտբոլն է մտաբերում, ամեն մի վատ միտք գնդակի պես թռչում է նրա գլխից: Սակայն այսօր նա անտարբերությամբ լսեց ընկերոջ սուլոցը և անմիջապես դուրս չվազեց: Ականջներում դեռ ուսուցչուհու ազդու ձայնն էր հնչում:

— Դու պետք է շատ լուրջ պարապես...

Երբ տուն եկավ դպրոցից, անմիջապես բացեց թվաբանության դասագիրքը ու սկսեց խնդիրը կարդալ: Մի քանի անգամ անուշադիր կարդալուց հետո, հուսահատ շարժումով մի կողմ հրեց գիրքը:

— Էհ, մեկ է, ինձանից խնդիր լուծող դուրս չի գա,— ցանկացավ իրեն հանգստացնել: Բայց այս անգամ այդ նրան չհաջողվեց: Ահա շուտով կվերջանա քառորդը, իսկ թվաբանությունից իր «2»-ը մնում է «2»:

Սուլոցը կրկնվեց: Նա մոտեցավ պատուհանին, ետ քաշեց վարագույրը: Բակում կանգնած էր Մերուժանը՝ գնդակը թևատակին:

Դե ի՞նչ կա նրանում. Չէ՞ որ նա դասարանի լավագույն աշակերտներից է. երևի հիմա էլ դասերը պատրաստել է, վերջացրել ու հանգիստ սրտով ուզում է խաղալ:

— Շտապիր Հակոբ, չգիտե՞ս, որ այսօր 6-ի «Բ»-ի հետ ենք խաղալու,- գոչեց Մերուժանը:

— Այսօր մի փոքր հիվանդ եմ, չեմ կարող խաղալ, - թաքցնելով իսկական պատճառը, ասեց Հակոբը:

— Հո չե՞ս զզվել, ուզում ես, որ տարվե՞նք, չէ՞ որ դու մեր ամենալավ դարբասապահն ես,— անհանգստացավ Մերուժանը:

Հակոբը ցած իջավ և նստեց մի քարի վրա:

- Դու դասերդ պատրաստե՞լ ես,—հարցրեց նա, հասկացնելով ընկերոջը, որ դասերի պատճառով է հրաժարվում խաղից:

- Իհա՛րկե, դե ի՞նչ կար այնտեղ. թվաբանության խնդիրը այնքան հեշտ էր, որ մի քանի րոպեում լուծեցի,—շտապ-շտապ վրա բերեց Մերուժանը:

«Ի՞նչ կա այնտեղ...— մտքում կրկնեց Հակոբը,— ճիշտ են ասում, որ ես բութ եմ, նա մի քանի րոպեում լուծել է, իսկ ես ժամերով գլուխ ջարդեցի, բան դուրս չեկավ»:

Մերուժանը, կարծես նրա միտքը կռահելով, հանգստացնելու համար ասաց.

- Դե ի՞նչ ես մտածում, երեկոյան կգաս տետրս կտանես, կարտագրես խնդիրը:

Մի փոքր վարանելով, Հակոբը անխոս հետևեց Մերուժանին:

... Խաղը սկսվեց: Հակոբը մտացրիվ կանգնել էր դարբասի մոտ:

Ահա գնդակը բերում են իր կողմը: Նա անհանգիստ շարժումներ է անում: «Հակառակորդը» սրնթաց մոտենում է դարբասին: Ու գնդակը բանի գնում, այնքան ավելի տարօրինակ է թվում Հակոբին, և ասես թե դառնում է իր քառորդային «2»-ի գլխիկը: Մի պահ հակոբը զզվանք է զգում դեպի գնդակը՝ մայլ «2»-ի այդ գլխիկը: Ահա գնդակը դեպի դարբասն է թռչում և... մի պահ նրան թվաց, թե պետք է զրկի այդ անտանելի «2»-ը, Հակոբը իրենից գնդակը վանեց: Նորից



հարված և, գոլ։ Բոլորը զարմացան իրենց «վարպետ» դարպասապահի այդ սխալի վրա։

— Այդ ի՞նչ գնդակ էր, որ չորսացիր, — ձայնեցին այս ու այն կողմից։

Խաղը վերսկսված է։ Բայց արի ու տես, որ այժմ ավելի է գնդակը «հետապնդում» Հակոբին։ Ախ այդ զագրելի «2»-ը։

Այլևս չհամբերելով, նա թողեց դաշտը։

— Ի՞նչ պատահեց։

Ընկերներն անմիջապես շրջապատեցին նրան։

— Ես չեմ խաղում, — շշնջաց Հակոբը և հեռացավ։

Տղաները այդ խաղը տանուլ տվեցին։

Հակոբը երեկոյան չգնաց Մերուժանից տետր բերելու։ Հաջորդ օրը թվաբանության դասին նա կրկին «2» ստացավ։

Ընկերները սկսեցին մեղադրել Մերուժանին, որ չի օգնում Հակոբին, իսկ վերջինս արդարացավ.

— Դե ի՞նչ անեմ, ասացի՝ եկ ինձանից արտագրիր, չուզեց...



Նկ. ՎԱՉԵ ԽԵՎԱՆՅԱՆԻ



Հաջորդ խաղին տղաները շատ լուրջ պատրաստվել էին և ցանկանում էին, որ անպատճառ Հակոբը պաշտպանի դարպասը։ Նա ուշանում էր։ Մերուժանը վազեց նրա հետևից։ Մի քանի անգամ Հակոբենց պատուհանի տակ սուլեց ֆուտբոլի ամբողջ քայլերգը, բայց՝ ապարդյուն։ Բարձրանալով Հակոբենց տուն, Մերուժանը վերջինիս գտավ թվաբանության խնդիրը լուծելիս։

Մերուժանին տեսնելով, Հակոբը շատ ուրախացավ։

— Պատասխանը 48 կիլոմետր է, — հարցրեց նա ընկերոջը։

— Չգիտեմ, դեռ չեմ լուծել, — մռայլ պատասխանեց Մերուժանը, — քեզ ենք սպասում։

— Արի լուծենք խնդիրը, հետո գնանք, լա՞վ, — ասաց Հակոբը։

Մերուժանի մտքով անցավ միանգամից լուծել և խնդրի պատասխանը ասել Հակոբին, որպեսզի ժամանակ չկորցնեն և գնան խաղի, սակայն լուծումն այնքան ձգձգվեց, որ մոռացան խաղը։ Երբ վերջացրին, երկուսով էլ գոհ էին։ Հակոբը պարզ պատկերացնում էր լուծման ընթացքը և այնքան հասարակ էր թվում դա իրեն։

Մյուս օրը, թվաբանության դասին, նա պարզ ու համարձակ հայացքով էր դասատուին նայում և ուզում էր, որ իրեն էլ դաս հարցնի... Դասամիջոցին ընկերները մոտեցան նրան.

— Հակոբ, թիմը խոստացել է չխաղալ, մինչև որ «երկուսը» չուղղես, — ասացին նրանք։

— Իմ պատճառով չխաղա՞լ, — կարմրեց Հակոբը։

— Այո, մենք պետք է ոչ մի «2» չունենանք։ Իսկ դասերը որոշել ենք այսուհետև խմբերով պատրաստել։



# ԻՄ ՍԻՐԵԼԻ ՍԱՔԱՐԹՎԵԼՈ

ԱԼԻՈ ՄԻՐՑԽՈՒԼԱՎԱ

*Վրաստան իմ, սեր իմ հոգու.*
*Անցավ վիշտը հին օրերի.*
*Եվ բնության հիմնն են երգում*
*Ճառաչները ջինջ ջրերի:*

*Ծաղկափթիթ քո լանջերին*
*Մանուկներն են ժիր թռչկոտում,*
*Ու երկնքի մով հայելին*
*Ժպիտն է քո արտացոլում:*

*Ցնծա՛ ուրախ ու բոյ քաշիր,*
*Վեր խոյացիր՝ առած թևեր,*
*Զավակները քո անհաշիվ*
*Թող բազմանան ինչպես աստղեր...*

*Տե՛ս, փայլում է արևի հետ*
*Մի վառ դրոշ ալ ու կարմիր,*
*Փետրվարն է նվեր բերել՝*
*Հոկտեմբերը Վրաստանի:*

*Դու ցնծում ես աշխատանքով,*
*Եվ բոլորն են քեզ մեծարում,*
*Հազար գործ ու հազար ջանքով*
*Կոմունիզմին դիմավորում:*

*Մոռացիր. որ երբևիցե*
*Տեսել ես դու մահ ու կրակ...*
*Իմ մայր երկիր, քեզ փառք ու սեր,*
*Բարգավաճում և հաղթանակ:*

Վրաց. թարգմ. ՄԻՐԱՔ ՄԻՐԱՔՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Դպրոց ինտերնատի առօրյան

Զ. ԼԵՇԿԱՇԵԼԻ



Առավոտյան ժամի յոթն է: Զանգը հնչելուն պես՝ վեր են թռչում այս խոշոր շենքի բնակիչները: Լուսաշող ննջարաններից աղմուկով դուրս են վազում երեխաները: Սկսվում է կյանքը, զարթնում է շենքը, բակը, պատշգամբները, միջանցքները լցվում են աղմուկով, արթնանում է նույնիսկ փողոցը: Բաց են վում դպրոց-ինտերնատի դռները: Սանդուղքներով շտապ իջնում են 14-15 տարեկան արևակեզ դեմքերով տղաներ ու աղջիկներ: Նրանցից շատերը դեռ կիսաքուն են, աղջիկները գլխի մազերը մատներով հարդարում, գնում են լվացվելու երեսսրբիչները մեջքներին կապած կամ ուսերին գցած:

— Օհո՜, — հանկարծ բացականչում է մի զանգրահեր տղա և ետ է դառնում, այս դեպքը աննկատելի չի մնում երեխաներից, նրանք ծիծաղում են ու իրար հայտնում այս լուրը. «Ռուսթավցի տղան՝ Սիմոն Բեկաշվիլին, մոռացել է երեսսրբիչը»: Այո, օրենք է, երբեք ոչինչ չպետք է մոռանալ: Ժամանակը սուղ է. 15 րոպեում երես լվանալը պետք է ավարտես, հարկավոր է շտապել, որովհետև դեռևս այնքա՜ն շատ գործ կա անելու:

Լվացվելուց հետո, երեխաները կրկին վերադառնում են ննջարան: Յուրաքանչյուր սենյակում դրված է երեք-չորս մահճակալ: Նրանք սկսում են անկողինները կարգի բերել: Ոմանք ծուլանում են, օրինակ, Աբաշեցի Անզոր Ջիքիան տրտնջալով ասում է. «Օ՜հ, պատրաստ եմ հատակին քնել, միայն մահճակալ չհարդարեմ»: Կողքի ննջարանում գործն ավելի հաջող է ընթանում, այստեղ Վանո Սուխիշվիլին է բնակվում: Նա «աղջիկների գործը» շատ հեշտությամբ սովորեց: Ինտերնատում մահճակալներ հարդարելը «աղջկա գործ» են համարում:

Քիչ անց, բակը լցվում է երեխաներով, սկսվում է առավոտյան մարզանքը: Տղաները սպորտի վարպետներ են դարձել, աղջիկներն էլ ետ չեն մնում նրանցից, մի խոսքով ամենքը առողջ ու աշխույժ են:

Քիչ անց, բոլորը գնում են նախաճաշելու, այս բանում ամենքն էլ ժիր են: Ահա երեխաներից մեկը չի սպասում, որ թեյը սառչի, լցրել է ափսեի մեջ և աղմուկով խփշտում է: Նրան մոտենում է դաստիարակը ու խրատում, որ պետք է ուտել առանց աղմուկի, հանգիստ, այնպես, ինչպես այդ անում են իր ընկերները: Նոդար Ցիխելաշվիլին տանել չի կարողանում կարագը, դաստիարակն ու ընկերները աշխատում են համոզել, որ կարագը շատ սննդարար է, ամբողջ օրվա ընթացքում ծախսած եռանդը վերականգնելու համար կարագ ուտելը անհրաժեշտ է: Ցիխելաշվիլին կամաց-կամաց ընտելանում է կարագ ուտելուն:

Դպրոց-ինտերնատի ամբողջ կոլեկտիվի խոշոր նվաճումը պետք է համարել օրինակելի կարգապահությունը, երեխաների փոխադարձ սերը, որը երկու հարյուրից ավել երեխաներին սերտ բարեկամական կապերով է կապել իրար հետ:

Այս ինտերնատում ապրում և դաստիարակվում են տարբեր ազգությունների երեխաներ: Ահա հայուհի Թամար Արաբյանը: Նա Կոջորից է, այս դեռատի աղջիկը կարգապահ է, ուսման մեջ առաջավոր: Նա երկրորդ կարգի սպորտսմեն է և դպրոցականների ռեսպուբլիկական սպարտակիադայում աչքի ընկնող տեղ է գրավում: Թամարը որբ աղջիկ է, չի տեսել ծնողական գուրգուրանք, սակայն այստեղ երկու հարյուր երեխայի սերն ու համակրանքն է վա-

յելում, սրանք Թամարի համար հարազատ եղբայրներ ու քույրեր են:

— Նայեցեք այս շիկահեր աղջըկան,— ասում է մեզ սպորտի վարպետ Բորիս Տախտյարովը,— սա Բելա Կոզական է: Նա Օ-ցից է:

Աղջիկը անհամարձակ պատմում է մեզ իր մասին, ինչպես կորցրեց հորը, ինչպես էր օգնում մենակ մնացած մորը, ապա մտաբերում է ինտերնատում անցկացրած ժամանակը և վերջապես ավելացնում.

— Երբ ես առաջին անգամ եկա այստեղ, մտադիր էի փախչել, չէի ընտելանում այստեղի ռեժիմին, իսկ այժմ...

Մի աղջիկ արագ-արագ իջնում է սանդուղքով՝ նամակը ձեռքին.

Բելա՛, նամակ ունես:

— Նամակը Ռոստովից կլինի,— ժպտալով ասում է Բորիսը,— զարմանալի աղջիկ է, որական հինգ նամակ է ուղարկում, հինգն էլ ստանում է, ինչպե՞ս է հասցնում պատասխաններ գրել՝ Ռիգա, Լենինգրադ, Մոսկվա, Կիև, Երևան, ամեն տեղ բարեկամներ ունի:



Լուսանկարները՝ Տ. ՍԱԽԱՐՈՎԻ և Զ. ԼԵՄԿԱՇՎԻԼՈՒ

Շուտով ժամը 9-ը կլինի, իսկ դպրոց գնալու մասին տակավին ոչ ոք չի մտածում: Երեխաները հավաքում են դասագրքերը, մի անգամ էլ աչքի անցկացնում տնային հանձնարարությունները ու զանգից հինգ րոպե առաջ հանգիստ դիմում են դեպի դպրոց: Զանգը հնչում է, ու բակը մի ակնթարթում դատարկվում: Երեխաները գրավում են իրենց տեղերը:

Հանրահաշվի դաս է տասներորդ դասարանում: Ալեքսանդր Մանկավարժ Ա. Ախալկացին երեք տասնյակ տարի է, ինչ ուսուցիչ է աշխատում: Բազմաթիվ շնորհալի, ընդունակ և չարաճճի երեխաներ են անցել նրա ձեռքի տակից, բայց այս դասարանը... Որքա՜ն ուժ ու եռանդ վատնեց ուսուցիչը այս դասարանը կարգի գցելու համար: Դժվար էր, շատ դժվար: Այս դասարանը կազմված էր Վրաստանի 15 շրջաններից եկած տարբեր մակարդակի երեխաներից: Փորձված դասատուն կարողացավ մի ընդհանուր կոլեկտիվ ստեղծել և հանրահաշիվը սիրելի առարկա դարձնել ամենքի համար:

Ցերեկվա ժամը երեքին երեխաները կրկին վերադառնում են ինտերնատ: Ճաշում են, մի ժամ հանգստանում, իսկ հետո գնում են պարապմունքի պիտ-

## ԱՐԻ՛, ՃՈՃՎՈՂ ԿԱՄՈՒՐՋԸ ՏԵՍ

ՆԱԶԻ ԿԻՂԱՍՈՆԻԱ

Փախած հողմից ու արևից՝
Նստել ես տանն ու երազում...
Ո՛չ սարերն ես ելնում թռիչ,
Ո՛չ ձորերի խորքը տեսնում:

Զանգեր հնչող կամուրջն այս ձիգ,
Սիրտդ պատեց ահով մի խոր,
Չկարդացիր ինչպես մի գիրք,
Կոթողները մեր հին ու նոր:

Քեզ չդյութեց դաշտը զմրուխտ՝
Կուրծքը պճնած ալ կակաչով,
Կակաչներ չեն նրանք անշուշտ,
Այլ տանիքներ՝ հեռվից կանչող...

Հե՛յ, ո՞վ ես, ու՞ր, քեզ չի՞ քաշում
Գարնան անձրևն երգով հնչող...

Մի՞թե, իրավ, դու չես տեսնում
Եղնիկի պես ժայռ մագլցել...

Դուրս ե՛կ, սիրի՛ր ամպի արև,
Թող գոհար ցողն այտդ թրջի,
Թող քեզ հենի ինչպես տերև
Լույս ճլորթին այս կամուրջի:

Շրջիր մեզ հետ ու ճանաչիր
Վրաստանի հողը պես-պես
Թող Դարիալը ցնծուն կանչի
Արձագանքի մտերմի պես...

...Փախած հողմից ու արևից՝
Զուր ես նստել ու երազում,
Ո՛չ սարերն ես ելնում թռիչ,
Ո՛չ ձորերի խորքը տեսնում...

Վրաց. թարգմ. ՀՈՎՀ. ԿԱՐԱՅԱՆ

ներական սենյակներում: Երեխաների մեծ մասը խումբ-խումբ է պարապում: Մի սեղանի շուրջը երեք աղջիկ նստած Նիկոլոզ Բարաթաշվիլու բանաստեղծությունն են սերտում: Ներս է մտնում հերթապահ դաստիարակ Կակո Անթելավան՝ ձեռքին փաթեթ բռնած: Նա ժպտալով մոտենում է և փաթեթը դնում սեղանին, որի վրա խոշոր տառերով գրված է՝ «Գիրքը փոստով». սա էլ Նաթելլայի հերթական ծանրոցն է. Նրա գրադարանը հարստանում է Շոլոխովի «Խաղաղ Դոն» հիանալի գրքով:

Աշակերտության մի մասը դուրս է եկել բակը. Նրանք ծառի ստվերի տակ նստոտել ու մեծ աշխույժով պարապում են: Այս ժամերին ամենքը դաս են պատրաստում, յուրաքանչյուրի ձեռքին գիրք ու տետր կտեսնեք:

Դպրոց-ինտերնատում դպրոցականները մեծ հաջողությունների են հասել սպորտի ասպարեզում. կազմակերպված են մի շարք սպորտային մրցումներ՝ ֆուտբոլի, վազքի, վոլեյբոլի, սկավառակ գցելու և այլ ձևերից: Երեխաները հաճախ ելույթներ են ունենում տեղական, շրջանային, ռեսպուբլիկական սպարտակիադաներում, Նրանցից լավագույնները մասնակցեցին նաև Մինսկում կազմակերպված մրցություններին և հանդես եկան մեծ հաջողությամբ:

Երեկոյան ժամը 10-ին, ընթրելուց հետո, երեխաները գնում են իրենց ննջարանները, ուր կատարյալ խաղաղություն է. միջանցքում միայն լսվում են հերթապահ դաստիարակի քայլերը: Լուսամուտները բաց են, սենյակներում 200 հոգի անուշ քնի մեջ են, շնչում են խաղաղ, ուժեր են հավաքում, մեծանում են կոմունիզմ կառուցողների կադրերը:

Վրաց թարգմ. ԱՐՉԻԼ ԴԱՎԹՅԱՆ

## ՁԵԶ ԽԱՂԱՂ ՔՈՒՆ

*ՌԵՎԱԶ ՄԱՐԳԻԱՆԻ*

Մուշ-մուշ, անուշ քնած են արդ
Մանկիկները մեր խատուտիկ,
Մեկը հոնքն է շարժում հանդարտ,
Մեկը բացում ձեռք ու տոտիկ:

Մեկի մազն է ընկել բարձին՝
Ոսկեօղակ նախշեր կազմած.
րնում են մեկի աչքին
Թզուկները տատի պատմած:

... Մանուկներն են մուշ-մուշ քնել:
Նայում եմ ես նրանց արթուն.
Մեկի կակաչ այտին ընկել՝
Մով ստվերն է խաղում բարդու:

Մեկը ժպտում ինչ արևգակ,
Շարժում է աչ շուրթերը իր.
Մեկը գրկել մի մեծ գնդակ,
Մեկը հոլն է սեղմել կրծքին...

Քնած են: Վառ երազի մեջ
Տեսնում են խաս դաշտեր ծաղկուն, —
Կոմունիզմի վարդեր անշեջ,
Ձեզ խաղաղ քո՜ւն, ձեզ խաղաղ քո՜ւն:

Վրաց. Թարգմ. ՀՈՎՀ. ԿԱՐԱՅԱՆ



Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ




ՕՏԻԼԱ ԽՈՍԵԼԻԱՆԻ

Նկ. ԳՈՒՐԱՄ ԴԵԼՈՎԱՆՈՒ

Պատահեց այնպես, որ Ավթոյի և Տատեի միջև ընկած մտերմության կամուրջը խորտակվեց: Բացի այդ, նրանց բակերը միացնող աւլի վրա դրված երկու հատ տախտակն էլ՝ ակացիայի ձողից պատրաստված, կամրջի բազրիքի հետ ջուրը նետեցին:

Երբ Սանդրոն ու Վաժան խռովեցին իրարից, մենք միջամտեցինք գործին.

— Ես ի՞նչ անեմ, ես հո չե՞մ դժգոհում նրանից. նա ինքն է ինձանից խռով... հուզված պատասխանեց Վաժան:

Միջօրեին, երբ երկնակամարի վրա մի պատառիկ ամպ անգամ չէր երևում, որոշեցինք Սանդրոյին դաս տալ:

— Պատկերացնու՞մ ես, — դարձավ ինձ Սանդրոյի վրա վրդովված Գիգլան, — պատկերացնու՞մ ես, այդպիսի անպատասխանատվություն, ոչ ոք քեզանից դժգոհ չլինի, իսկ դու...

— Ուղղակի տմարդություն է, — ընդհատեցի նրան:

— Եվ այն էլ ինչպիսի... գլուխը շարժելով ասաց Գիգլան:

Դրանից հետո խոսքը ավեցինք Սանդրոյին: Նա հայտարարեց, որ ինքը կարծում էր, թե Վաժան է իր հետ խռով:

Այսպիսով մենք նման տարաձայնությունների ժամանակ ուղղակի փրկություն էինք համարում՝ ոչ միայն մեր մտերիմների միջև խորտակված կամուրջը վերականգնելը, այլև այդ կամուրջը ամրապնդելու համար: Պարզ է, որ մեր մտերիմ հարևանների այսպիսի հարաբերությունը երկար չպետք է տևեր: Սակայն նրանց դժգոհության տասներեքերորդ օրը, դպրոցից վերադառնալիս նկատեցինք, որ Ավթոյի անցած ճանապարհով Տատեն չէր անցնում, և Տատեի ցանկապատած շեմքից Ավթոն ներս չէր նայում:

Նրանց կամակորության մասին բոլորս գիտեինք: Ոչ միայն ես, այլև ինսունըերկուամյա պապիկն անգամ չէր հիշում, որ երբևիցե կաղնին ծանրաբեռնված լիներ խնձորներով, սակայն եթե Ավթոն ասեր. «Կաղնին խնձոր է տվել» պետք է պատասխանեինք.

— Տվել է, և այն էլ ինչպիսի՜ խնձորներ:

Ձեզ լավ հայտնի է, որ գետերը չեն հոսում վարից վեր, սակայն եթե Տատեն այն կարծիքի էր, որ ջրվեժները հովիտներից դեպի լեռների կատարներն են թափվում, պետք է հաստատեիք:

Դեհ, ասացեք, խնդրեմ, այդպիսի համառների հետ մենք ի՞նչ կարող էինք անել։

Եվ ահա, երբ խրատելով, պախարակելով և գովաբանելով ոչինչ չկարողացանք անել, որոշեցինք մի ուրիշ հնար գտնել։ Դասերից հետո Գիգլան եկավ մեր տուն։ Նստեցինք պատշգամբում, արմունկներով հենվեցինք բազրիքին և ճակատներս շփելով, սկսեցինք մտածել։ Երկար մտածեցինք, սակայն իզուր... չգիտեմ, երևի Գիգլան ինձանից ավելի շատ մտածեց, քանի որ ինձանից շուտ ձանձրացավ և ձեռքը բացասաբար շարժեց.

— Չեմ կարողանում զորավոր խոսք գտնել՝ այդ համառներին հաշտեցնելու համար, ասաց նա և գնաց։

— Ճիշտ է, նրանցից և ոչ մեկը չի զիջի, — հաստատեցի նրա ասածը աստիճաններով իջնելիս։ Գիգլան բակից նորից ձայն տվեց ինձ.

— Ոչինչ, վերջ ի վերջո իրենք կհաշտվեն։

— Առայժմ չեն հաշտվում, իսկ հետո ի՞նչ կլինի, չգիտեմ, — ասացի ինքս ինձ և տուն վերադարձա։

Այնուամենայնիվ ավելի խորը մխրճվեցի մտքերիս մեջ, և հանկարծ այնպիսի միտք ծագեց իմ գլխում, որ խենթի պես վեր թռա ու վազեցի Գիգլայի հետևից։ Գիգլան, լսելով որոշումս, ուրախությունից ծափ տվեց, և երկուս էլ ոգևորված գործի անցանք։

Արդեն մթնշաղ էր։ Ուրիշ հարմար բան չգտնելով՝ քարշ տվեցինք ինքնաշարժ վագոնիկների համար պատրաստած տախտակները։ Բակում կանգնած ակացիայից էլ մի ձող կտրեցինք և այս բոլորը տարանք Ալթույի ու Տաթևի բակերի սահմանով անցնող առվի մոտ։ Կոշիկներս հանեցինք, թևերիս տակ տախտակներ, իսկ կամրջի համար կտրած ձողը ձեռքներիս՝ ջուրը մտանք։ Հին կամրջի տեղում ափից ափ շարեցինք տախտակները, ձողի մի ծայրը գալար շիվերով կապեցինք կաղնուց, մյուսը՝ բարդուց, և նոր կամուրջը պատրաստ էր։





— Վաղը նրանք կտեսնեն կամուրջը. նրանցից յուրաքանչյուրը կկարծի, թե մյուսն է շինել, և կհաշտվեն, — եզրակացրեցի ես։

— Այո՛, բայց հետո որ իմանա՞ն։

— Մենք ոչինչ չենք ասի, իսկ նրանք իրարից կիմանան միայն այն ժամանակ, երբ արդեն հաշտված կլինեն։

Եվ նորից չեն խոսի, քանի որ կպարզվի, որ նրանցից և ոչ մեկը չի վերականգնել կամուրջը։

Հենց այն է, պետք է հետևեինք, երբ բակի մուտքի մոտ ինչ-որ մի փշի դեմ ընկա և ճակատս պատռվեց...

Գիգլան ցրտից ատամներն էր չխչխկացնում, իսկ իմ դեմքը արյունով էր շաղախված։ Սակայն ես կարծես ոչ մի ցավ չէի զգում, իսկ Գիգլան էլ հավատացնում էր, որ ինքը չի մրսում։

Վրաց. թարգմ. ՍՈՒՐԵՆ ԱՎՋՅԱՆ

# ԵՐԳ ՁՄԵՌԱՅԻՆ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԱՍԻՆ



ՄՈՒՐՄԱՆ ԼԵԲԱՆԻՁԵ

Թե դպրոցից քո անգին
Բերում ես լոկ «չորս» ու «հինգ»,
Թե «երեքն» է սրտիդ խորթ,
Իսկ «երկուսը» անծանոթ՝

Ա՜խ, ինչ անուշ կթվա
Արձակուրդը ձմեռվա,
Ցուրտ ու բուքը մոռացած՝
Ձյունն էլ երգով կիջնի ցած...

Իսկ թե նախորդ տարուց դեռ
Մնացել են քեզ «պարտքեր»,
Եվ հոգու մեջ քո քնքուշ
«Երկուսներն» են դարձել փուշ,

Ա՜խ, ինչ տխուր կթվա
Արձակուրդը ձմեռվա,
Ձյունն էլ խռով, բարկացած
Հոնքերի պես կիջնի ցած...

Չենք ծուլացել մենք երբեք,
Սիրել ենք դաս, ջանք ու երգ,
Դրա համար ահա, տե՛ս,
Անգամ ձյունն է ժպտում մեզ:

Եվ շախմատ ենք մենք խաղում,
Կինո, թատրոն հաճախում,
Ե՛վ գիրք կարդում. և արագ
Չմշկում ենք մենք ձյան տակ:

... Թե դպրոցից քո անգին
Բերում ես լոկ «չորս» ու «հինգ»,
Այսպես անուշ կժպտա
Արձակուրդն էլ ձմեռվա:

Ցուրտն ու բուքը մոռացած՝
Ձյունն էլ երգով կիջնի ցած,
Եվ բնության հայելին
Կարձագանքի քո ժպտին...

Վրաց. թարգմ.
ՀՈՎՀ. ԿԱՐԱՅԱՆ

Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



# ՁԱՅՐԱՑԱԾ ՁՄԵՐՈՒԿԸ

*ԲԵԹԻՆՈ ԱԲՐԱՄԻՇՎԻԼ*

*(Թբիլիսիի 58-րդ դպրոցի 3-րդ դաս. աշակեր*

Եկավ գարունը: Նինոյի բանջարանոցը հետզհետե սկսեց գեղեցկանալ: Կաղամբը իր հավարաթերթ շրջազգեստը փռեց, գազարը կմրուխտե վարսերը նազանքով շոյեց, ձմերուկը իր երկար պարանը ձգեց և կուչ եկավ բանջարանոցի մի անկյունում: Բայց արի տես, վարունգին դուր չեկավ ձմերուկի հարևանությունը, փախավ ծիրանի կողմը, չարաճճի տղայի նման բարձրացավ ծառի վրա ու հըպարտ նայեց իր հարևաններին:

Փոքրիկ Նինոն ամեն առավոտ վաղ վեր էր կենում անկողնուց, վերցնում էր ցնցուղն ու բանջարանոցը ջրում: Նա այնպիսի աշխուժով էր կատարում իր պարտականությունը, որ տեսնողին հիացմունք էր պատճառում:

Մի օր Նինոն պատշգամբում նստած կեռաս էր ուտում, երբ Թբիլիսիից այցի եկավ իր ընկերուհին: Նինոն շատ ուրախացավ: Սկսվեցին խաղերն ու զբոսանքները: Եվ Նինոն բանջաբանոցի մասին իսպառ մոռացավ:

Մի գիշեր, երբ Նինոն անուշ քնի մեջ էր, հանկարծ սենյակի դուռը լայն բացվեց, և ներս մտավ Նինոյի սիրելի ձմերուկը: Ձմերուկին հետևեցին վարունգը, գազարը, կաղամբն ու դդումը, սրանք բոլորն էլ դեղնել, թոշնել էին, կաղամբի թերթերը կախ էին ընկել, գազարի վարսերը թառամել ու խղճալի տեսք էին ընդունել: Ձմերուկը ոտները պինդ խփեց հատակին և խստորեն դիմեց Նինոյին:

— Ինչո՞ւ ուշադրություն չես դարձնում մեզ, ինչ է պատահել, ինչո՞ւ մոռացար, մենք քեզ նման ծույլ երեխաներին չենք սիրում: Դրա համար էլ որոշել ենք տեղափոխվել Մարինեի բանջարանոցը:

Այս խոսքերից հետո նա դուռը փակեց, և բոլորն էլ դիմեցին դեպի բանջարանոցը:

— Վա՜յ, մայրիկ ջան, գնում են, օգնեցեք... — ձայն տվեց Նինոն հուզված: Իր ձայնի վրա նա արթնացավ, ապշած նայեց դես ու դեն և, համոզվելով, որ երազ է տեսել, շտապ ելավ, հագնվեց ու, վերցնելով ցնցուղը, վազեց դուրս: Բանջարանոցը ճիշտ որ թոշնել էր: Նինոյին թվում էր, թե ամեն կողմից կանչում են.

— Շուտ արա, օգնի՛ր, ծարավ ենք...

Նա արագ-արագ ջրեց բանջարանոցը: Կաղամբը կրկին բացեց իր հավարաթերթ շրջազգեստը, գազարը կմրուխտե վարսերը ցրեց...

Ուրախացած Նինոն երկու ձեռքով փաթաթվեց ձմերուկին ու պինդ-պինդ համբուրեց:

*Թարգմ. ՀՈՎՀ. ԴԱՎԹՅԱՆ*



*Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԼԻՆՈՏԻՊԻԿԻ ՖԵԼԻԵՏՈՆՆԵՐԸ

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ



## ՆԱՄԱԿ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

Երեխանե՛ր, դուք ինձ չեք ճանաչում, որովհետև ինձ երբեք չեք տեսել: Չեք էլ կարող տեսնել, որովհետև ես անտեսանելի եմ: Ա՛յ, հենց հիմա գուցե ձեզ մոտ եմ, բայց դուք ինձ չեք տեսնում: Իսկ ես բոլորին էլ տեսնում եմ: Եկեք ծանոթանանք, իմ անունը Լինոտիպիկ է: Ես հայտնի Լինոտիպի որդին եմ: Իմ հայրը տպարանում է աշխատում, որտեղ թերթեր ու գրքեր են տպագրվում, որտեղ տպագրվել է հենց այս ամսագիրը: Այսինքն՝ եթե ուզում եք իմանալ, հենց հայրս է առաջինը շարել այս տառերը: Երևի տեսել եք էքսկուրսիաների ժամանակ, հայրս մի մեծ գրամեքենայի նման է և կապարե տառեր է շարում:

Ես էլ եմ տառեր շարում, բայց փոքրիկ եմ, անտեսանելի, դրա համար էլ համարյա ամբողջ օրը շրջում եմ, ամեն տեղ լինում եմ, և եթե որևէ մեկը իրեն լավ չի պահում, նրա մասին ֆելիետոն եմ գրում: Ես ուզում եմ, որ բոլոր երեխաներն էլ լինեն կարգապահ, և չլինի ոչ մի ծույլ ու թափթփված, կռվարար ու մեծամիտ, պարծենկոտ ու նախանձ, հուշող ու կեղծավոր: Ահա այդպիսիների մասին եմ ես գրում ֆելիետոններ: Կարդացեք ու նայեցեք ձեր շուրջը՝ չե՞ք ճանաչում նրանց: Եթե ճանաչում եք՝ օգնեցեք, որ ուղղվեն նրանք:

Հարգանքներով՝ ԼԻՆՈՏԻՊԻԿ

## ՖԵԼԻԵՏՈՆ ԱՌԱՋԻՆ

## ՄԻ՞ԹԵ ՆՈՒՅՆ ՇՈՒՇԻԿՆ Է

Դուք երևի Շուշիկին ճանաչում եք: Դե նա, որ Հակոբյանի անվան դպրոցում է սովորում: Հարվածային է և լավ էլ երգում է: Դրանից ելնելով, շատերը կարծում են, թե լավ աղջիկ է:

Ես էլ էի սկզբից այդպես կարծում, բայց երբ մի անգամ նրանց տանը... Շուշիկենց տուն գնացի պատահականորեն: Ուզում էի տեսնել ինչպիսին է Շուշիկը տանը: Էլի նույն կարգապահն ու խելացի՞ն է, ինչպես դպրոցում: Հասա Շուշիկենց տան դռանը ու մի ճեղք էի որոնում ներս մտնելու համար, երբ տեսա, որ Շուշիկի հորեղբայր Սարգիսը նույնպես մոտեցավ դռանը ու սեղմեց զանգի կոճակը:

Դուռը բացեց Շուշիկի մայրը: Առիթից օգտվելով ես անմիջապես ներս մտա, պառկեցի բազմոցի տակ ու սկսեցի... տպագրել: Այն էլ ասեմ, որ բազմոցի վրա նստել էր Շուշիկը ու գիրք էր կարդում:

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Բարև, Գոհար, եղբայրս տանը չի՞:

ՄԱՅՐԸ — Հիմա կգա, վերարկուդ հանիր, Սարգիս:

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Իսկ Շուշիկն ո՞ւր է:

ՄԱՅՐԸ — Տանն է: Շուշի՛կ, Շուշի՛կ, եկ այստեղ, հորեղբայր Սարգիսն է եկել: Շուշի՛կ, քնա՞ծ ես, ի՞նչ է:

ՇՈՒՇԻԿ — (կամացուկ) Ամա՛ն, ինչ անեմ, որ եկել է: (Բարձրաձայն) Գիրք եմ կարդում, մա՛:

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Դե, ոչի՛նչ, ոչի՛նչ, չխանգարեք: Ես ինքս կգնամ նրա մոտ, կբարևեմ: Բարև, Շուշի՛կ:

ՇՈՒՇԻԿ — (Ալարկոտ) Բարև:

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Օ՜, եթե այդ վայրկյանին տեսնեիք Շուշիկի հայացքը, որով նա հորեղբորը նայեց... Այնքա՜ն զզվելի էր: Նայեց ձեռքերին, որոնցում ոչինչ չկար, նայեց գրպաններին, որոնք ուռած չէին ու, հիասթափված, նորից սկսեց գիրք կարդալ: Այնքան ամոթալի էր: Կարծես պարտադիր է, որ հորեղբայրը ամեն անգամ մի նվեր բերի Շուշիկին:

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Իսկ դասե՞րդ ինչպես են, աղջիկս:

ՇՈՒՇԻԿ — Դե, էն ժամանակ ասացի, միակ գերազանցիկը ես եմ, է՛լի:

ՄԱՅՐԸ — Շուշիկ, ինչո՞ւ ճիշտ չես ասում: Նախ՝

դու դեռ գերազանցիկ չես։ Հետո՝ ձեր դասարանից Աշոտն ու Սեդան, իսկապես, գերազանցիկ են։

ՇՈՒՇԻԿ — Որ չես իմանում, մի՛ խոսի։ Նրանք իսկի էլ լավ չեն սովորում, ուղղակի բախտները բերում է։

ՄԱՅՐԸ — Դե լավ, լավ, այդ մասին հետո կխոսենք։ Հա՜, իսկ ես քեզ, Սարգիս, մի բան եմ ուզում ասել։ Եկ այստեղ առանձին նստենք։ Դու մեր հիմնարկի գլխավոր ինժեներին ճանաչո՞ւմ ես, չէ՞, ընկեր Ոսկանյանին։

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Իհարկե, ճանաչում եմ։

ՇՈՒՇԻԿ — Մա՜, էդ նա չի՞, որ ակնոցներ ունի, որ իմ ծնունդին մի մեծ տիկնիկ էր բերել։

ՄԱՅՐԸ — Նա է, մի՛ խանգարիր, գիրքդ կարդա։ Ուրեմն, Ոսկանյանն ասաց, Սարգսին խնդրիր իմ անունից, որ մեր գործարանի երիտասարդ գյուտարարների երեկոյին իրենց հիմնարկի նվագախումբը ուղարկի՝ համերգ տալու։

ՇՈՒՇԻԿ — Վա՜յ, ես էլ կգամ անպայման։ Թմբկահարը էլի էն երկար քթով մարդն է, չէ՞, հորեղբայր Սարգիս։ Վա՜յ, ինչ լավ է։ Ես հիշում եմ, մեկն էլ երգում էր «Իմ առաջին սերն ես, աղջիկ... տրա լա՜, լա՜, լա՜, լա՜, լա՜...»

ՄԱՅՐԸ — Շուշի՛կ, ասացի մի՛ խանգարիր։ Հետո, քանի անգամ եմ ասել, որ մեծերի խոսակցությանը ականջ դնել չի կարելի։ Գիրքդ վերցրու և մյուս սենյակը գնա։

ՇՈՒՇԻԿ — Ինչո՞ւ, ես էլ եմ ուզում լսել։

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Մեր զրույցը քեզ չի վերաբերվում, Շուշիկ։ Լսիր մայրիկին, մյուս սենյակը գնա։

ՇՈՒՇԻԿ — Պա՜հ, դուք է՛լ։

ՀՈՐԵՂԲԱՅՐ — Ես դեմ չեմ, իհարկե, Ոսկանյանի առաջարկին, բայց օրվա մասին պետք է նախօրոք պայմանավորվել։ Որովհետև...

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Տեսե՛ք, տեսե՛ք, Շուշիկը գնացել ու դիտմամբ շատ բարձր միացրել է ռադիոընդունիչը, որ խանգարի մայրիկի ու հորեղբոր զրույցը։

ՄԱՅՐԸ — Շուշի՛կ, պակասեցրու ձայնը, խլացնում է։

ՇՈՒՇԻԿ — Իսկ ինձ համար շատ լավ է։

ՄԱՅՐԸ — Պակասեցրու ասում եմ։ Այդպես չի կարելի միացնել։

ՇՈՒՇԻԿ — Դե, ի՞նչ է, է՛, մամ, ի՞նչ անում եմ, խոսում եք վրաս։ Ձեզ թողնում լսեմ, չեք թողնում ռադիոընդունիչը միացնեմ։ Բա ի՞նչ անեմ։

ՄԱՅՐԸ — Գիրքդ կարդա։

ՇՈՒՇԻԿ — Հոգնեցի, է՛։ Վա՜յ, զանգը տալիս են, հայրիկն է, գնամ բացեմ դուռը։ Պապ ջան, բերե՞լ ես հեծանիվը։

ՀԱՅՐԸ — Ո՛չ, Շուշիկ ջան։

ՇՈՒՇԻԿ — Դե, գնա՛ դու էլ... Ինչո՞ւ չես առել, ասացիր՝ կառնես, չէ՞...

ՀԱՅՐԸ — Հետո ի՞նչ, որ ասացի։ Ժամանակը չէ։ Հյո՞ւր կա տանը։

ՇՈՒՇԻԿ — Հորեղբայր Սարգիսն է։ Բա ինչի՞ չառար, հը՞, ասացի չէ՞, որ իմը փչացել է։

ՀԱՅՐԸ — Վերանորոգելու կտանք։

ՇՈՒՇԻԿ — Չէ, ես նորն եմ ուզում։ Նրանից, որ գեղամն ունի։ (Լացակումած) Ինչի՞ չառար, հը՞։

ՀԱՅՐԸ — Դե լռի՛ր, անհարմար է։ (Բարձրաձայն) Բարև, Սարգիս, վերջերս ուշ-ուշ ես երևում։ Շենքի հարցը ո՞նց լուծվեց։

ՇՈՒՇԻԿ — Չէ, դե ասա, հեծանիվս ինչի՞ չառար, հը՞, հիմա կասես՝ փող չունենք, չէ՞։

ՀԱՅՐԸ և ՄԱՅՐԸ — Շուշի՜կ...

ԼԻՆՈՏԻՊԻԿ — Կհավատա՞ք, երեխաներ, ես ուղղակի անհարմար զգացի Շուշիկի փոխարեն, թողեցի նրանց տունն ու անշշուկ դուրս եկա, բայց որոշեցի նրա մասին անպայման պատմել ձեզ։ Դե, ինքներդ ասեք, ի՞նչ անուն կարելի է տալ նրան։ Երեսառած։ Իհարկե, երեսառած։ Եվ ում են հարկավոր դպրոցում նրա ստացած 4 և 5 գնահատականները,

երբ նա իրեն տանը պահել չգիտե, երբ նա չի հարգում մեծերին, հյուրերին...





## ՀՆԱՐԱԳԵՏ ՄԿՆԻԿԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Գիժ, կռվասեր մկան մեկը,
Թե ինչ փչեց մի օր խելքը,
Իրեն կոչեց «Կորիճ», «Ուժեղ»,
Ընկերոջն էլ՝ «Զնչին մժեղ».
— Կուզե՞ս,— ասավ,— հենց մի մատով
Քթիդ խփեմ, դիպչես պատով:
Սա՝ ջղային, սրտից նեղը,
Պատասխանեց տեղն ու տեղը.
Տո ո՜ւժ,— ասավ,— շատ չփքվես,
Փչեմ թե չէ, դու կչքվես:
— Ի՛նձ, այ ճուտիկ,
Շատ ես պստիկ...
Ասավ, թռչեց փոքրիկ չանչին,
Տարավ, բերեց, ուղիղ դնչին:
Մյուս «քաջն» էլ խիստ կատաղեց,
Թունդ ապտակով նրան դաղեց:
Խառնեց ճուտիկ ուրիշ մի մուկ
— Թողեք,— ասաց,— հիմա՛ր ե՛ք դուք...
Վազեց, գնաց, որ բաժանի,
Տեսավ զոռ է, ճար չի լինի.
Քիչ հեռացավ, ձայնը լարեց,
Կատվի նման «մյաու» արեց:
Մլավոցը հենց որ առան,
Էն «քաջերը» դես-դեն թռան.
Ամեն մեկը մի ծակ գտավ,
Ահ ու դողով մեջը մտավ:





Բ. ԹՈՎԻԿ

## ԼՈՒՍՆԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

Պողո՛ս, ի՞նչ ես կարծում, լուսնի վրա բնակիչներ կա՞ն, թե՞ ոչ,— հարցնում է դասատուն աշակերտին:

— Չկա՛ն, ընկե՛ր Կարապետյան:

— Ինչի՞ց գիտես:

— Որովհետև լուսնի վրա օդ չկա, ընկե՛ր Կարապետյան, իսկ առանց օդի մարդիկ ոչ մի տեղ չեն կարող ապրել:

— Լա՛վ, իսկ դու, Վաչիկ, համաձա՞յն ես Պողոսի հետ:

— Այո՛, ընկե՛ր Կարապետյան:

— Եվ ի՞նչ ապացույց ունես:

— Ես այն ապացույցն ունեմ, ընկե՛ր Կարապետյան, որ եթե այնտեղ մարդիկ լինեին, կընկնեին մեր գլխին:

Նկ. ՄԻՔԱՅԵԼ ԳԻՉԳԻՉՅԱՆԻ

## ԽՈՍՔԸ ՎԵՐՋՈՒԹՅԱՆ

Սարգիսը մտավ խոհանոց և ոտքը պատահաբար խփելով կաթնամանին, կաթը թափեց: Եվ որպեսզի մայրը չկասկածի, մի մեծ բաժակ ջուր լցրեց մնացածի վրա ու դուրս եկավ:

Մայրը հասկացավ ամեն ինչ, սպասում էր, որ Սարգիսը խոստովանի իր արածը, բայց Սարգիսը լուռ մնաց: Նախաճաշի ժամանակ մայրն ասաց.

— Սարգի՛ս, դու զգացի՞ր, որ այսօրվա կաթը շատ համեղ էր, մենք այսպիսի կաթ երբեք չէինք բերել խանութից, չէ՞...

— Ախր ես ջուր էի լցրել կաթի վրա,— ուրախացավ Սարգիսը:

# ՄՈՂԵՍ ԲՌՆՈՂԸ

— Այ թե քաջ տղա է Արամայիսը, — ասում էին ընկերները, — նույնիսկ մեծ մողեսներից չի վախենում։

Ճիշտ էին ասում։

Դպրոցը գլխավորապես Արամայիսի շնորհիվ բնագիտական կաբինետը հարստացրեց մի տասնյակի չափ մողեսներով, բզեզներով ու տեսակ-տեսակ միջատներով, որոնց բռնելն ուրիշների համար շատ դժվար էր, նույնիսկ անհնարին։

Մի անգամ Միրուշը կարիճ տեսավ ու լեղապատառ փախավ Արամայիսի մոտ։

— Հիմա կբռնեմ, դու հեռու մնա, — ասաց Արամայիսը։

Ու նա ոտքերի մատների վրա կամաց-կամաց մոտեցավ կարիճին ու բռնեց պոչը։ Բայց թե ինչ պատահեց դրանից հետո, Միրուշն իսկույն չիմբռնեց։ Արամայիսը էլեկտրական հոսանքից զարկվածի նման ետ թռավ ու գոռաց

— Վա՜յ, մամա՛ ջան...

— Այ տղա, քա կարիճի պոչից կբռնե՞ն, դա էլ հո մողես չի՛, — մոտ գալով ասաց դասատուն։

— Ես բերանը թողած՝ պոչո՞վ կծեն, — լաց եղավ Արամայիսը։



## ՄՐՍԿԱՆԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Վառարանի կողքին նստած,
Կարծում եք դաս է սերտում.
Մերթ հնչում է, շոգից քրտնած,
Մերթ աչքերն է նա թարթում,
Ձմուշկները ժանգն է ուտում,
Դահուկներն են չորացել,
Իսկ սահնակը ներքնահարկում
Սարդերի բույն է դարձել։
Ընկերները ծիծաղում են
Ու կանչում են նրան դուրս.
Աղմկում են ու խաղում են,
Նա նստել է տուս ու փուս.
Եվ ասում է ընկերներին.
— Ա՜խ, թե դրսում լիներ տաք,
Կտեսնեիք՝ ո՞վ է ինձ պես
Քշում դահուկ ու սահնակ։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

## ԱՄԵՆԱ ՃԱՐՊԻԿԸ



— Ով որ խնդիրը վճռել է, թող ձեռք բարձրացնի, — ասաց մաթեմատիկայի դասատուն։

Բոլոր աշակերտները ձեռք բարձրացրին։

— Դու՞ ինչու բարձրացրիր, Արմիկ։ Չէ՞ որ դու չես վճռել խնդիրը, — ընկերուհուն կամացուկ ասաց Անուշը։

— Ախր դասատուն միշտ ձեռք չբարձրացնողներին է դաս հարցնում։



# ՋԻՆԱ

ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

1

Անցյալ տարի ամառը երկու երիտասարդ կին, դուրս գալով Հանքավանից, գնացին դեպի Ծաղկունյաց լեռները։

Ծաղկունյաց լեռների անտառապատ լանջերից կանաչ հեղեղ է հոսում դեպի ձորերը և տարածվում լեռների մեջ սեղմված Սառնաղբյուրի հովտում։

Նույն Ծաղկունյաց լեռների լանջերին բյուր ակունքներից ծնվում է եղնիկի արցունքի պես վճիտ, եղնիկի պես երկչոտ ու արագավազ Մարմարիկ գետակը։ Ծնվում է և ինքն էլ չիմանալով ինչու, առաջ է վազում թռչկոտելով դարերի ընթացքում հղկված որձաքարերի, պեպենոտ, մարմարանման ապարների վրա։ Վազում է մանկան՝ պես ուրախ, անհոգ, անվերջ երգելով։ Եվ այլ է նրա հոգեզմայլ մեղեդին, երբ առաջ է ընթանում քարքարոտ հունով, այլ՝ երբ խոսուն կոհակներով փարվում է իր վրա խոնարհված ծառերի ճյուղերին կամ ծաղիկների ցողուններին։ Հաճախ նրան նվագակցում է ձյունագագաթ սարերից իջնող հովը՝ իր մեղմ սվսվոցով։ Եվ երբ մարդը գալիս է այդտեղ, հմայված բնության գեղեցկությամբ ու նրա անկրկնելի հանգով, հիացմունքով է նայում հարազատ երկնքի, լեռների, ձորերի վեհ գեղեցկությանը։

Ահա թե ինչու ավանից դուրս եկած երկու երիտասարդ կանանցից մեկը, որ քաղաքից նոր էր եկել, որոշ տեղ Մարմարիկի հոսանքն ի վեր գնալուց հետո ցույց տվեց գետափնյա մի դաշտ, ուր կակաչները կարմիր հագած աղջիկների պես շուրջպար էին բռնել, և ասաց.

— Աղջի, Սիրան, մի նայիր, զմայլել կարելի է։

Նրա ընկերուհին՝ Նվարդը միայն ծիծաղեց ապա շարունակեց ուշադիր նայել ծնկահաս խոտերի մեջ, իմանալու համար հասած մորի կա՞, թե ո՞չ։

Մորին դեռ չէր հասել։

Սակայն այսօր նրանք տնից դուրս էին եկել բոքու և ճավիկ քաղելու նպատակով։ Դրա համար էլ պետք է գնային դիմացի լեռնալանջերին ձգված թավ անտառը։

Գնում էին զրուցելով, կատակելով։

Անտառը մտնելուց հետո նրանք աշխատում էին իրարից չհեռանալ։ Եվ, չնայած դրան, պատահում էր, որ նրանք իրարից մի քանի քայլ հեռանում էին, ապա ձայն տալով գտնում իրար։

Անտառում բավական առաջանալուց հետո հանկարծ Սիրանը երկյուղած կանչեց։

— Աղջի Նվա՜րդ, ա՜յ Նվա՜րդ...

Ձայնից ընկերուհու երկյուղն զգալով, Նվարդն անմիջապես թողեց ձեռքի բակը, վազեց դեպի մամռակալած ժայռի կողմը։ Այդտեղ Սիրանը թաքնվել էր մի հաստ լորենու հետև և զգուշացած առաջ էր նայում։ Ընկերուհու ատամնաձայները խելառի պես նա դեմքով դարձավ և Նվարդին ձեռքի նշաններով խնդրեց չաղմկել։

Նվարդը հևալով փարվեց ընկերուհու մեջքին։

— Ի՞նչ է պատահել, աղջի։

Մի տե՛ս, մի տե՛ս։

Սիրանը մատով ցույց տվեց իրենցից հիսուն քայլի վրա գտնվող մի հաճարենի, որի տակ երկու նորածին այծյամ, ասես ինչ-որ վտանգից զգուշանալով, հպվել էին իրար։

— Դրանց մայրն այստեղ էր. ինձ տեսնելուն պես փախավ,— բացատրեց Սիրանը։

— Վա՛յ, քոռանամ ես, ինչ մե՜ղք են։

Մի պահ ընկերուհիները դատում էին՝ ինչ անել, մոտենալ նորածին այծյամներին, թե՞ հեռանալ, որ մայրը վերադառնա, կերակրի նրանց։ Որոշեցին մոտենալ։ Քիչ հետո նրանք արդեն փաղաքշում էին ասես որբ մնացած այծյամներին։

— Աղջի,— ասաց Սիրանը,— սրանց մայրը կարող է չվերադառնալ, խեղճերը սովից կկոտորվեն։ Արի տանենք տուն։

Նվարդը դրա դեմ առարկեց։

— Սիրտդ քա՞ր է. մայրը կգա, կտեսնի չկան, լաց կլինի։

— Այդ դեպքում մեկին տանենք, մյուսը թող մնա։ Տանենք նվիրենք ընկեր Չիթախյանին, երեխաներն այստեղ են, կուրախանան։

Նվարդը դրան էլ դեմ էր, սակայն ընկերուհու համառությունը չկարողացավ կոտրել։

Նորածին այծյամներից մեկը նրանք թողեցին, իսկ մյուսը իրենց հետ բերին Հանքավան։

Երկրաբան Չիթախյանը գրասենյակում նստած էր, երբ տասներեք տարեկան մի տղա հևիհև ներս մտնելով, հայտնեց.

— Սիրանը ձեզ համար մի այծյամ է բերել։

Չիթախյանը նրա ասածից բան չհասկացավ։

— Ի՞նչ այծյամ, ա՛յ տղա։

Փոքրիկը շտապելով պատմեց, թե ինչպես Սիրանն ու Նվարդը գնացել են անտառ, այնտեղ տեսել են նորածին երկու այծյամ և մեկը դրանցից բերել, նվիրել Չիթախյանի աղջկան՝ Աստղիկին։

Չիթախյանին այդ լուրը չուրախացրեց։ Անմիջապես տեղից վեր կենալով, քայլերն ուղղեց դեպի տուն։

Փայտաշեն փոքրիկ տնակի առաջ մի խումբ երեխաներ էին հավաքվել։ Ներսում նրա աղջիկը՝ Աստղիկը գրկել էր փոքրիկ այծյամին ու փաղաքշում էր նրան։ Հորը տեսնելուն պես նա ընդառաջ եկավ և հուզված բացականչեց.

— Տե՛ս, տե՛ս...

— Այս՝ ո՞վ է բերել,— հարցրեց Չիթախյանը՝ հոնքերը կիտելով։

— Սիրանը բերեց,— պատասխանեց մորաքույր Արուսը։

— Անմիջապես պետք է տանել...

Հայրը խոսքը դեռ չէր ավարտել, երբ Աստղիկը և նրա քույրը՝ Անահիտը սկսեցին լաց լինել.

— Չե՛մ տա, չե՛մ տա,— ասաց Աստղիկը։

— Մեղք է, այ աղջիկ,— բացատրեց Չիթախյանը,— այստեղ դա չի ապրի։

— Հա, չի ապրի։ Մորաքույր Արուսը կաթ կըտա, կապրի։

Իզուր էլ Չիթախյանը համոզում էր աղջկան այծյամը վերադարձնել։ Փոքրիկ Աստղիկն այդ մասին լսել անգամ չէր ուզում։ Նա անվերջ լալիս էր, խնդրում հորը, որ այծյամին թողնի։

Հայրն ստիպված էր զիջել։

Առաջին իսկ պահից պարզվեց, որ փոքրիկ այծյամի խնամքը մեծ գլխացավանք է մորաքույր Արուսի համար։ Փոքրիկ կենդանին կամակորություն էր անում. չէր ուզում կովի կաթն ուտել։

Երեկոյան, երբ Չիթախյանն իմացավ այդ մասին, նորից առաջարկեց այծյամին տանել անտառ, թողնել այն տեղը, որտեղից վերցրել են և



հեռվում սպասել, մինչև մայրը կգա, կհրավիրի նրան։

Բայց այդ մասին լսելուն պես Աստղիկը նորից սկսեց աղաղակել։

— Ո՛չ, ո՛չ, չեմ տա...

Մորաքույր Արուսը գիշերը այծյամին փաթաթեց այնպես, ինչպես միայն մանկանը կարելի է փաթաթել։ Աստղիկը խնդրեց, որ նրան բերենք իր հետ՝ մահճակալի վրա։ Նա վախենում էր, որ գիշերը, երբ ինքը քնած լինի, հայրն այծյամին տանի անտառ։ Նրան համոզեցին, որ այծյամին չեն տանի։ Միայն դրանից հետո նա պառկեց, բայց մինչև քունը մի քանի անգամ գլուխը բարձրացրեց ու նայեց մահճակալի մոտ դրված այծյամին։

2.

Առավոտյան Աստղիկը շուտ արթնացավ։ Եվ նրա առաջին մտահոգությունն էր իմանալ, արդյոք այծյամը կաթ կուտի։

Մորաքույր Արուսը տանը չէր։

Քիչ հետո պարզվեց, որ նա գնացել է կովի թարմ կաթ բերելու։ Կաթը նա լցրեց փոքրիկ շշի մեջ և փորձեց փոքրիկ ծծուկով կերակրել այծյամին։ Սկզբում Ջիկան կարծես չէր հասկանում, թե ինչ բան է այդ ծծուկը։ Նա երևի չէր զգում մոր կրծքի ջերմությունն ու բուրմունքը, դրա համար էլ ծծուկը խլմացնելով բերնում, դունչը հետ էր քաշում և խոժոռ աչքերով շուրջը նայում։

Մորաքույր Արուսը նրան փաղաքշում էր և այնպես բացատրում, ասես Ջիկան իրեն պետք է հասկանար։

— Վերցրու, անուշ ջան, վերցրու, ազի՛զ, կաթ է...

Իսկ Աստղիկի երեխա ուրախությունն արդեն տխրության էր փոխվել։ Նա հասկանում էր, որ եթե Ջիկան կաթ չուտի, կմեռնի, ուստի կռացած մորաքույր Արուսի մոտ, ինքն էլ փորձում էր նրան խրախուսել.

— Դե, խնդրում եմ, Ջիկա ջան, կեր, հետո քեզ կոնֆետ կտամ, մեղր կտամ...

Ջիկան մի քանի ժամ դիմացրեց, չուզեց ծծուկը վերցնել։ Միայն մորաքույր Արուսի համառության շնորհիվ նա սկսեց ծծուկից քաշել կաթը։ Այս տեսնելուն պես Աստղիկը տեղից վեր ցատկելով, վազեց հոր մոտ և երջանիկ ժպիտը դեմքին՝ ասաց.

— Ջիկան կերավ, հայրիկ, կաթ կերավ...

Այդ նա սկսեց մանրամասն պատմել, թե ինչպես Ջիկան համառում էր, ինչպես մորաքույր Արուսը և ինքը նրան փաղաքշում էին, խնդրում, որ նա ծծուկը վերցնի, կաթ ուտի...

Այդ առաջին հաջողությունը սակայն մորաքույր Արուսին հետագա հոգսերից չէր ազատում։ Ջիկայի համար ամենօրյա խնամք էր հարկավոր։

Երկրարան Չիթախյանի տանը կարծես մի նոր երեխա էր ծնվել, որին պետք էր խնամել, սնեցնել։ Եվ այդպես էլ անում էին։ Ամեն օր մորաքույր Արուսը նրա համար կաթ էր վերցնում, կերակրում, խնամում էր նրան։ Օրեցօր աճում էր Ջիկան, հասակ առնում, զգվում տնեցիներին, վազում նրանց հետևից։

Իսկ որոշ ժամանակից հետո նա տնեցիների հետ



դուրս էր գալիս փողոց, մանկան պես քայլում նրանց հետ, գնում այգի, դաշտ...

Հարևանությունում արդեն նրան բոլորն էին սիրում։

նա թե երեխաների և թե մեծերի ուրախության առարկան էր։

Ավանում չկար մեկը, որ Չիկային տեսնելիս նրան մի փաղաքշական խոսք չասեր, ձեռքի քաղցր պատառ նրան չմեկներ։ Բոլորն այնպես էին ընտելացել նրան, որ երբ մի օր չէին տեսնում, հարցնում էին.

— Չիկան ո՞ւր է, չի երևում...

Բայց ահա պատահեց այն, ինչին ավանցիները չէին սպասում։ Մի օր քաղաքից երկու մարդ եկան, գտան Չիթախյանին և հայտնեցին, որ իրենք Չիկային պետք է տանեն գազանանոց։

Դուք,— ասաց նրանցից մեկը,— իրավունք չունեք նրան այստեղ պահելու... Դա հազվագյուտ կենդանի է, պետք է պահվի գազանանոցում։



Չիթախյանը չուզեց վիճել։

— Տարեք, խնդրեմ,— պատասխանեց նա,— եթե գազանանոցում նրա համար ավելի լավ կլինի, թող այնտեղ ապրի։

Ավանում իմացան, որ Չիկային ուզում են տանել գազանանոց, բողոքեցին։

— Այդ ինչո՞ւ, ի՞նչ իրավունքով,— ասացին ոմանք։— Մեր ավանում գազանանոց չկա, ենթադրենք այդ էլ մեր գազանանոցի կենդանին է...

Այդ օրերին Աստղիկը Հանրավանում չէր։

Մորաքույր Արուսը իմանալով, որ Չիկային տանում են քաղաք, գրկեց նրան, համբուրեց դունչը, ճակատը, աչքերը, ապա գնաց փակվեց իր սենյակում։

Քաղաքից եկած մարդիկ Չիկային դրին ավտոմեքենայի մեջ, տարան։

Մոտ մի ամիս հետո մորաքույր Արուսը, որ յոթ տարվա ընթացքում երբեք քաղաք չէր գնացել, հագավ իր նոր զգեստները, ապա գտնելով Չիթախյանին, ասաց.

— Մի մեքենա տուր, քաղաք եմ գնում։

— Այդ ի՞նչ է պատահել, Արուս,— հետաքրքրվեց Չիթախյանը,— քանի տարի է քաղաք չես գնացել, այսօր հանկարծ սիրտդ քաղաք ուզեց։

— Էլ չեմ կարող համբերել. սիրտս պատառ-պատառ է լինում։ Ուզում եմ գնամ Չիկային տեսնեմ։

Քիչ հետո Արուսի հետ բեռնատար ավտոյում տեղավորվեցին մի խումբ կանայք ու երեխաներ։

Նրանք գալիս էին քաղաք՝ իրենց սիրելի Չիկային տեսնելու։

3.

Կիրակի այդ օրը Երևանի գազանանոցում այցելուներ շատ կային։ Նրանցից շատերը վկա եղան մի սրտաշարժ տեսարանի։

Տարեց մի կին, շրջապատված մի խումբ կանանցով ու երեխաներով, արագ քայլում էր դեպի այն արգելանոցը, ուր այծյամներ են պահվում։ Ահա նա հասավ պարսպին և կերկերուն ձայնով կանչեց.

— Չիկա՜, Չիկա՜...

Չիկան հենց այստեղ էր, իր նման մի այծյամի հետ։ Լսելով ծանոթ ձայն, նա ականջները սրեց, ուշադիր նայեց պարսպի կողմը և սկզբում զգուշությամբ, ապա արագ առաջ գնաց։ Մորաքույր Արուսը գրկեց նրա գլուխը և համբուրեց։

Խոնավացան նաև Չիկայի խելոք աչքերը։ Նա դունչը քսում էր մորաքույր Արուսի դեմքին, վզին, մազերին, լիզում նրա ձեռքերը։

Հավաքվածները զարմանքով էին նայում այս տեսարանին։




Վաղուց արդեն ապացուցված է, որ աշխարհում հրաշքներ չկան: Այնուամենայնիվ նախապաշարված մարդիկ մինչև օրս էլ հավատում են զանազան հրաշքների:

Քրիստոնեական կրոնում նկարագրվում են այնպիսի հրաշագործություններ, որոնք իբր կատարել են առաքյալները: Այդ ավանդություններից մեկը, օրինակ, «երկնային մանանայի» մասին է: Պատմում են, թե իբր մի քանի հազար տարի առաջ եբրայեցիները փախչում էին Եգիպտոս: Հրեաների այդ խմբերը, որոնք դեգերում էին անապատներում, ամեն անգամ փրկվում էին ինչ-որ «հրաշքով»: Այդ «հրաշքներից» մեկն էր՝ «մանանան», որը աստծո հաճությամբ թափվեց երկնքից, հրեաներին փրկեց անխուսափելի սովից:

Բայց ոչ միայն հրեաներն ունեն նման առասպել, այլև շատ ուրիշ ժողովուրդներ:

Ամենից զարմանալին այն է, որ «երկնային մանանա» հիմա էլ է թափվում երկնքից:

Այո: Եվ այդ տարօրինակ երևույթը արդեն բացատրված է գիտնականների կողմից: Փոթորիկներն ու մրրիկները շատ հաճախ նույնիսկ բավականին ծանր իրեր վերցնում տեղափոխում են մի տեղից մյուսը: Ու երկնքից հանկարծ սկսում են թափվել հեռավոր անապատներում թաղված գանձերի ոսկեդրամները, հեռավոր լճերից քամու թևով օդ ելած ձկներ և այլն: Ու մարդիկ, որոնք չգիտեն, թե բանն ինչումն է, «ձկների» կամ «ոսկու» անձրևը բացատրում են միայն գերագույն էակի բարեհաճությամբ:

Իսկ ի՞նչ բան է «մանանան»:

Հարավ-Արևմտյան և Հյուսիսային Աֆրիկայի անապատներում և չոր տափաստաններում աճում է քարաքոսի մի հետաքրքիր տեսակ, ուտելու լեկանորան: Լեկանորա քարաքոսը տեղացի բնակիչները օգտագործում են ալյուր պատրաստելու և հաց թխելու համար:



Քարաքոսի հասուն կեղևները խորշոմում են, դառնում գնդիկներ և պոկվում քարից: Այդ գնդիկները շատ թեթև են: Ուժեղ քամին հեշտությամբ դրանք տեղափոխում է հսկայական տարածություններ ու թափում այնտեղ, ուր մարդիկ երբեք չէին կարող կասկածել: Ահա և «երկնային մանանայի առաջացման գաղտնիքը:

Հնում երկար ժամանակ մարդկանց զարմացրել ու սարսափեցրել են նաև Արևելքի այլ «հրաշքները»: Դրանք մինչև օրս էլ ապշեցնում են մարդկանց իրենց տարօրինակ բնույթներով: Հին հունական միֆոլոգիան պատմում է, որ Արշալույսի աստվածուհի Էոսը ուներ մի հզոր որդի՝ Մեմնոնը: Երբ հույները պաշարել էին ավանդական Տրոյա քաղաքը, Աքիլլեսի հետ ունեցած մարտում Մեմնոնը զոհվեց: Բայց այսքանով Մեմնոնի պատմությունը չի ավարտվում: Գրեթե երեք հազար տարի առաջ եգիպտական փարավոն Ամենհոթեփ երրորդը Նեղոսի ափին կառուցեց հսկայական կոթողներ: Փարավոնի մասին ժամանակի ընթացքում մոռացան մարդիկ, իսկ նրա կառուցած արձանները անվանեցին «Մեմնոնի կոթողներ»:

Այդ քարե արձանները արևածագին արձակում են երաժշտական հաճելի հնչյունները: Եվ միայն արևածագին, երբ հորիզոնում վառվում է արշալույսը: Երեք հազար տարուց ավելի է, ինչ ամեն առավոտ հնչում են Ամենհոթեփի կառուցած արձանները; վախեցնելով նախապաշարված մարդկանց: Քանի-քանի պատմություններ ու ավանդություններ են ծնել այդ «հրաշք» արձանները: Հույները հավատում էին, որ այդ Մեմնոնի ոգին է ողջունում իր մորը՝ Արշալույսի աստվածուհի Էոսին: Արաբները պատմում են հրեշավոր ջինների մասին, որոնք քար են դարձել ամենազոր կախարդի ուժով: Եվ ջինները ամեն արշա-

լույսին հառաչում են ու խընդրում մեղքերի թողություն:

Իրականում ի՞նչ բաներ են այդ «երգող» արձանները:

Բանն այն է, որ Ամենհոթեփի երրորդ փարավոնը արձանները կառուցել է ճեղքոտ քարից: Արևածագից առաջ, այսինքն օրվա այն պահին, որն ամենացուրտն է Հյուսիսային Աֆրիկայում, քարի անցքերը սեղմվում են ցրտից և նրանցով անցնող քամին առաջացնում է հաճելի, երաժշտական սուլոց: Ցերեկվա և գիշերվա ընթացքում քարի անցքերը ջերմությունից ընդարձակվում են, ու քամին ազատ անցնելով նրանց միջով, ոչ մի ձայն չեն առաջացնում.

Ահա մի ուրիշ հրաշք, որի մասին պատմում են եվրոպական տարբեր երկրներում: 16-րդ դարի անգլիացի մի պատմաբան այսպես է նկարագրում Հենրիխ 8-րդի ժամանակների Անգլիան:

«... Իռլանդիայում հետաքրքրքիր երևույթներ են տեղի ունենում, քանի որ այստեղ չկան ոչ կաչաղակներ ու ոչ էլ թունավոր սողուններ: Այնտեղ չկան եխիդնաներ, օձեր, դոդոշներ, մողեսներ: Ես տեսել եմ քարեր, քարեր, որոնք ունեին օձերի և այլ թունավոր սողունների ձև: Ժողովուրդն ասում է, որ այդ քարերը ժամանակին եղել են սողուններ և նրանք քար են դարձել աստծո կամքով»:

Եվ իրոք, այդ հավատը այնքան խորն էր ժողովրդի մեջ, որ Անգլիացի վաճառականները հատուկ գնում էին Իռլանդիա՝ տարօրինակ ապրանք... հող բերելու: Անգլիացիները այդ հողը լցնում էին իրենց այգիներն ու հավատում էին, որ «սուրբ հողը» կոչնչացնի օձերին:

Պատճառը, որ Իռլանդիայում և մի շարք այլ կղզիներում, օրինակ՝ Նոր Զելանդիայում, Կրետեում, օձեր չկան, շատ պարզ է: Օձերը թռչել չգիտեն և չեն կարող կարել-անցնել ջրային տարածությունները ու հաստատվել այն կղզիներում, որոնք անջատված են մայրցամաքներից շատ վաղուց:

Իսկ այդ ի՞նչ քարե օձեր են, որոնք գտնվում են Իռլանդիայում: Դրանք քարացած ամոնիտներ են, վաղուց ոչնչացած կակղամորթ գլխոտանիների տեսակներ, որոնք օձերի հետ ոչ մի կապ չունեն և միլիոնավոր տարիներ առաջ քարացել-մնացել են: Սնահավատ մարդիկ էլ դրանք նմանեցրել են օձերի ու հավատացել, թե այստեղ խառն է աստծո մատը:

Այս ամենից կարելի է եզրակացնել, որ ամենապարզ երևույթները, որոնք անհասկանալի են եղել մարդկանց համար, բացատրել են գերբնական միջամտությամբ, իսկ կրոնը առիթը չի կորցրել և այդ ամենը օգտագործել է սնահավատներին միշտ սարսափի մեջ պահելու համար:

Թարգմ. Ա. ՄԱՀԱԿՅԱՆ

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆ և ՏԵԽՆԻԿԱ

### ԱՌԱՆՑ ԹՎԱՑՈՒՅՑԻ

*Դուք լսե՞լ եք ձեռքի ժամացույց առանց թվացու[illegible]դպիսի ժամացույց վերջերս պատրաստել է դանիացի մի ուսանող, իսկ այժմ ճապոնիայում կազմակերպված է դրանց մասսայական արտադրությունը:*

*Փոքրիկ, փակ կորպուսի մեջ, որ հիշեցնում է սովորական ժամացույցը, տեղադրված է կիսահաղորդիչային տարբերընդունիչ՝ փոքրիկ մարտկոցներով և բարձրախոսով: Ընդունիչը բռնում է միայն ժամանակի բյուրոյից բաց թողնվող ալիքը: Բավական է սեղմել կոճակը, որպեսզի լսվի դիկտորի ձայնը՝ «ժամը այսքանն» է:*

### ԱՊԱԿԻ՝ ՍՊԻՐՏԻ ՓՈԽԱՐԵՆ

*ԳԴՀ-ի մի շարք թանգարաններում հիմա քիչ կհանդիպեք սպիրտով լցված բանկաների, որոնց մեջ կոնսերվացվում են զանազան կենդանիներ: Բանկաների փոխարեն գրված են օրգանական ապակու մաքուր կտորներ: Մասնագետները մշակել են հատուկ պլեքսիգլասի հալման մեթոդիկան՝ ձկների, օձերի, միջատների և այլ կենդանիների պահպանման համար: Դրանք այդկերպ պահպանվում են ավելի լավ և ավելի երկար, քան սպիրտի մեջ:*

### ՎՐԱՆԸ ԳՐՊԱՆՈՒՄ

*Լենհատտանի Վեյլինկտ քաղաքի պլաստմասսայի գործարանը թողարկում է պլաստմասսայե վրաններ, որոնք ծալելիս տեղավորվում են գրպանում, իսկ բացված վիճակում ծառայում են իբրև մարդատար ավտոմեքենայի գարաժ:*

### ԼԻԼԻՊՈՒՏ ԼԱՄՊԸ

*Ավտոմատ ղեկավարման ապարատի մեջ լուսավորման համար տեղադրված է մի լամպ, որը հանգիստ կարող է անցնել ասեղի անցքով:*

### ՄԱՆԿԻԿ ՇԱՐԺԻՉԸ

*Բելգիական մագնիտա-սիրող դը Լինսը պատրաստել է մի քանի մանրիկ էլեկտրաշարժիչներ, որոնք չնայած շատ փոքր չափսերին (18 մմ), տալիս են 6 հազար պտույտ 1 րոպեում:*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

# ՀՆԴԿԱԿԱՆ ՓԻՂԸ

### ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

Փիղը հնդկական «ազգային կենդանիներից» ամենանշանավորն է: Մարդիկ փղի անունը միշտ կապում են Հնդկաստանի հետ: Այդ կենդանին շատ հաճախ է հիշատակվում հին հնդկական առակներում:

Հնդկական դիցաբանության մեջ փղին պատվավոր տեղ է վերապահված: Լակշմի աստվածուհին միշտ պատկերվում է փղի ուղեկցությամբ, իսկ Գանեշ աստվածը, որը հնդկական պանթեոնում ամենահայտնին է, պատկերվում է փղի գլխով: Էլլորայի տաճարներից ամենագեղեցիկը հենված է փղերի վրա:



Վայրի վիճակում փղերը թափառում են հոտերով, որոնց սովորաբար առաջնորդում է մայր փիղը: Նրանք ամբողջ օրը համարյա ուտում են, բայց ջուր խմում են օրը երկու անգամ՝ լուսաբացին և մայրամուտին:

Փղերը սնվում են գլխավորապես կոշտ կերով՝ բամբուկով, շաքարեղեգնով, ծառերի տերևներով և այլն: Օրեկան փիղը ուտում է մոտ 15 փութ սննդանյութ: Քնում է կողքի վրա, պառկած վիճակում, իսկ եթե հանկարծ քուն մտնի կանգնած վիճակում, ապա դա նշան է, որ տվյալ փիղը վատառողջ է: Փղի կառուցվածքն այնպիսին է, որ նստելը շատ անհարմար է, դրա համար էլ նա նստել չի սիրում:

Գեր և արտաքինից ծանրաշարժ փիղը իրականում շատ ճարպիկ, ուժեղ և խելացի կենդանի է: Խելացի է արդյոք փիղը: Այս հարցին պատասխանենք մի գիտնականի խոսքերով, որը երկար տարիներ եղել է կենդանաբանական այգու դիրեկտոր և բազմակողմանիորեն ուսումնասիրել տարբեր կենդա-


Խմբագիր՝ ՍԱՎ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-11-83, 2-59-06:

ՎՖ 01167. Պատվեր 92: Տպաքանակ՝ 9500: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 16 II 1961 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 20 կ.:






նիների վարքը: Այդ գիտնականը իր ցուցակում նշած 10 առավել խելացի կենդանիների շարքում հնդկական փղին դասել է երրորդ տեղը, նրանից առաջ թվելով շիմպանզեին և օրանգուտանին: Փղից հետո հաջորդաբար գալիս են ձին, առյուծը, կուղբը, արջը, դրիգլին, գորշ մրջը, առնետը, քարայծը և շունը: Փղի խելացիությունը ամենից շատ օգտակար է լինում անտառներում, որտեղ նրան վարժեցնում են ծառերի հաստ բները քաշելուն, գլորելուն, հավաքելուն ու իրար վրա դարսելուն: Փիղը օգտագործվում է նաև որպես բեռնակիր կենդանի:

Փղերը կենդանական աշխարհի հսկաներից են, իսկ ցամաքային կենդանիներից ամենամեծերը: Ասիական կամ հնդկական փղերը իրենց մեծությամբ զիջում են աֆրիկական փղերին: Հնդկական փղի բարձրությունը հասնում է մինչև 3 մետրի, իսկ միջին քաշը՝ չորս տոննի:

Փղի մորթը հաստ է, գորշավուն և տեղ-տեղ ծածկված է մազմզուկներով: Վերին շրթունքը ձգվել և դարձել է կնճիթ: Փիղն ըստ իր ցանկության կարող է կնճիթը մեթ կարճացնել, մերթ երկարացնել: Կնճիթի վրա գտնվում է մատնանըման մի հավելված, որով փիղը կարողանում է վերցնել շատ փոքր առարկաներ՝ մետաղյա մանր դրամներ և նույնիսկ ասեղ:



Կնճիթը փղի համար ծառայում է որպես հոտառության և շոշափելիքի զգայարան: Երբ փիղը ուզում է ջուր խմել, ապա քթածակով ներս է քաշում և կնճիթում բավական հեղուկ վերցնելուց հետո, այն դատարկում է կոկորդի մեջ:

Փղի վերին ծնոտից դուրս են ցցվում ժանիքները: Դրանց երկարությունը հասնում է մինչև երկու մետրի, իսկ քաշն էլ 50-ից մինչև 90 կիլոգրամի: Հնդիկ հմուտ վարպետները փղոսկրից նուրբ իրեր են փորագրում:

Փղերի որսը շատ դժվար գործ է և պահանջում է մեծ վարպետություն: Հնդիկները վաղօրոք ջունգլիներում մի մեծ տարածություն են ընտրում և հաստ ու մեծ գերաններով ցանկապատում: Դրանից հետո փղերին զանազան ձևերով գայթակղեցնում և դեպի ցանկապատած վայրն են ուղղում, ապա փակում դուռը:

Փղերը ավելի մեծ դեր են խաղացել անցյալում: Փղերը հին աշխարհում պատերազմի դաշտ էին դուրս բերվում: Նըրանցով կռվի էին դուրս գալիս ոչ միայն հին հնդիկները, այլև կարթագենցիները: Փղեր օգտագործել են պարսիկները՝ հայերի դեմ մղած պատերազմներում: Հայտնի է, որ Վարդանանց պատերազմում, որը տեղի է ունեցել Ավարայրի դաշտում, պարսիկները հայերի դեմ դուրս են բերել 300 փիղ: Անցյալում փղերով ոչ միայն ռազմադաշտ էին դուրս գալիս, այլև բերդեր նվաճում:

Ներկայումս հնդկական բանակում փղերը պահվում են միայն տոնական շքերթների համար:

Դկ. Կ. ՀԱՅԱՊՈՐԾՅԱՆ

20.Կ



# ՛ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

«Կակաչներ» ՀԱՄԼԵՏ ԱՎԵՏԻՍՅԱՆ
(Մարտունու շրջ. Լիճք գյուղ)

«Թռչող թիթեռ» — ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ
(Երևան, Աղայանի դպրոց, I դաս.

«Վազող եղնիկ» — ԱՐԱԻԿ ՍԱՀՅԱՆ
(Երևան, 7 տարեկան)

